ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

2

ՓԵՏՐՎԱՐ

ԵՐԵՎԱՆ 1963

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

### «ԱՐԱՐԱՏ» ՎԵՊԸ ՌՈՒՍԵՐԵՆ

Մոսկվայի «Սովետսկի պիսատել» հրատարակչությունը երկրորդ անգամ հրատարակեց սովետահայ արձակագիր Հ Մ Ա Յ Ա Կ Ս Ի Ր Ա Ս Ի «Արարատ» վեպը՝ 75 հազար օրինակ տիրաժով, հետևյալ նախաբանով.

«Գրքում վերստեղծված են հայ ժողովրդի անկրկնելի գծերը, նրա ազգային հպարտությունը և միջազգայնական ոգին, ընդունակությունը համառորեն ու արիաբար պայքարելու թշնամիների դեմ, համբերությամբ տանելու պատերազմի դժվարությունները... գրքում շատ կան հերոսներ: Եվ հենց կերպարների բնարությունը, նրանց էմոցիոնալ երանգավորումը ողողում են վեպի օպտիմիստական աշխարհազգացողությունը, համատեղ հավատը հաղթանակի նկատմամբ»:

### ԴԻՄԱԴՐՈՒԹՅԱՆ ՀԱԿԱՖԱՇԻՍՏԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄԸ ԵՎՐՈՊԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԵՐԿՐՈՐԴ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՏԱՐԻՆԵՐԻՆ

Մ., 1962, 733 էջ:

Գրքում մի խումբ հեղինակներ պատմում են դիմադրության հակաֆաշիստական շարժման մասին, որը ծավալվել էր եվրոպական երկրներում, ֆաշիստական օկուպացիայի տարիներին: Հակաֆաշիստական շարժումները իսկական ժողովրդական շարժումներ էին, որոնք գլխավորում էին կոմունիստական պարտիաները: Գրքում հետաքրքիր փաստեր կան դիմադրության շարժմանը սովետական մարդկանց մասնակցության մասին:

### ԶԱԽԱՐԻԿՈՎ Ա. Ն., ՆՈՍՈՎ Ա. Պ.

### ԲՈԼՇԵՎԻԶՄԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՄԱՐՔՍԻՍՏԱԿԱՆ ԼՈՒՍԱԲԱՆՄԱՆ ՀԱՄԱՐ ՍՄԿՊ ՊԱՅՔԱՐԻ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԵՐ (1928—1932 թթ.)

Մ., «Վիշայա շկոլա» հրատ., 1962, 116 էջ:

Հեղինակներն աշխատության մեջ բարձրացնում են պարտիայի պատմության անաղարտության հարցը պարտիայի կյանքի կարևորագույն շրջանում՝ 1928—1932 թթ., երբ մեր երկրում ամբողջ ճակատով սոցիալիզմի հարձակումն էր ծավալվում:

Հեղինակները բազմաթիվ նյութերի հիման վրա ցույց են տալիս, թե ինչպես անձի պաշտամունքի ժամանակաշրջանում աղավաղվել էին պարտիայի հիշյալ շրջանի պատմության մի քանի հարցեր:

### ՎԱՐԳԱ Ե. Ս.

### ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԿԱՊԻՏԱԼԻԶՄԸ ԵՎ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՃԳՆԱԺԱՄԵՐԸ

Ընտիր աշխատություններ: Մ., ՍՍՌՄ Գիտ. ակադ. հրատ., 1962, 504 էջ:

Այս ժողովածուի մեջ հավաքված են ակադեմիկոս Վարգայի ընտիր աշխատությունները ժամանակակից կապիտալիզմի և տնտեսական ճգնաժամերի մասին: Ականավոր գիտնականը այդ աշխատություններում վերլուծում է կապիտալիզմի էկոնոմիկան և, ելնելով մարքս-լենինյան ուսմունքից, ցույց տալիս կապիտալիզմի անկման անխուսափելիությունը:

### ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

Մ., ՍՍՌՄ Գիտ. ակադ. հր., 1962, 524 էջ:

Գրքում հետաքրքիր ձևով պատմվում է Հոկտեմբերյան Սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի հաղթանակի մասին, որը տեղի է ունեցել Կոմունիստական պարտիայի և Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ: Հանգամանորեն լուսաբանվում է ռևոլյուցիայի առաջնորդ Վ. Ի. Լենինի, Կենտրոնական Կոմիտեի և տեղական պարտիական կազմակերպությունների բազմակողմանի գործունեությունը՝ մասսաներին համախմբելու և նրանց ռևոլյուցիոն պայքարը հաղթությամբ պսակելու ուղղությամբ:

Գիրքը զերծ է այն թերություններից, որոնք տեղ էին գտել ռևոլյուցիայի պատմության մասին եղած աշխատություններում, կապված անձի պաշտամունքի հետ:





# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 2
ՓԵՏՐՎԱՐ
1963 Թ.

★

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 42-ՐԴ ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

СОДЕРЖАНИЕ








# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՀԵՐՈՍԱԿԱՆ ԷՊՈՊԵԱՅԻ ՕՐԵՐԻՆ

### ՎՈԼԳԱՅԻ ՃԱԿԱՏԱՄԱՐՏԻ 20-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ


Ա. ԵՐԵՄԵՆԿՈ

Սովետական Միության մարշալ


*Պատերազմների պատմության մեջ չի եղել այնպիսի մի ճակատամարտ, որն ինչպես իր մասշտաբներով, այնպես և պատմական հետևանքներով հավասար լիներ Վոլգայի ափին տեղի ունեցած ճակատամարտին։ Վեց և կես ամիս, ոչ մի րոպե չդադարելով, կատաղի մարտեր էին փոթորկվում Վոլգայի և Դոնի միջև ընկած տարածության վրա, հերոս քաղաքի պատերի մոտ, նրա փողոցներում և հրապարակներում, բանավաններում, Վոլգա գետի նավահանգիստներում։ Այդ ճակատամարտում հիրավի էպիկական բարձրության հասան Կոմունիստական պարտիայի դաստիարակած սովետական մարտիկների արժեքավոր հատկանիշները՝ Հայրենիքի սերը, արիությունն ու անձնազոհությունը, ատելությունը դեպի թշնամին, հաղթանակի անխորտակելի կամքը։*

*Դժվար է համառոտակի պատմել 200 օր ու գիշեր անընդհատ տևած ճակատամարտի մասին, մանավանդ եթե քեզ վիճակվել է այդ բոլորն անցկացնել զորքերի հետ միասին։ Մեծ երջանկություն էր, որ այդ ամենապատասխանատու ժամանակաշրջանում մեր ռազմաճակատի Ռազմական խորհրդի անդամն էր Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովը, որը գտնվում էր այն զորքերի հոծ շարքերում, որոնք սկզբում պաշտպանում էին Վոլգոգրադը, իսկ հետո կործանիչ հարված հասցրին թշնամուն։*

*Կբերեմ Վոլգայի էպոպեայի թափն ու ահեղությունը բնութագրող մի քանի փաստեր ու թվեր։ Գրեթե 100 հազար քառակուսի կիլոմետր տերիտորիա ընդգրկող, 400-ից մինչև 850 կիլոմետր ռազմաճակատի գիծ ունեցող այդ ճակատամարտի մի շարք էտապներում մարտերին մասնակցում էին ավելի քան երկու միլիոն մարդ, տասնյակ հազար հրանոթներ ու ականանետներ, հազարավոր տանկեր և ինքնաթիռներ։ Հերոս քաղաքի պաշտպանները ետ մղեցին մի քանի հարյուր կատաղի գրոհներ և գրեթե նույնքան էլ հակահարվածներ ու հակագրոհներ կատարեցին իրենք։*

*Վոլգայի ճակատամարտն սկսվելուց առաջ անհաջող իրադրություն էր ստեղծվել մեր զորքերի համար։ 1942 թվականի գարնանը թշնամուն հաջողվել էր, չնայած Մոսկվայի մերձակայքում կրած դաժան կորուստներին, զգալի հաջողություններ ձեռք բերել Ղրիմում և Խարկովի մերձակայքում, որի հետևանքով էլ ուժերի ու միջոցների հարաբերակցությունը փոխվել էր նրա օգտին։*

Ամռանը ֆաշիստական հորդաները լայն հորձանքով ներխուժեցին Հարավային Ռուսաստանի և Ուկրաինայի հսկայական տարածությունները և ապա հասան Կովկասյան գլխավոր լեռնաշղթայի լեռնանցքները: Նորից հաջողություններն ուղեկցում էին Հիտլերին և նրա գեներալներին: Դրանք Ստալինը իր ժամանակ բացատրում էր երկրորդ ռազմաճակատի բացակայությամբ Եվրոպայում: Անտարակույս է, որ արևմուտքից դաշնակիցների հարվածը կհեշտացներ պայքարը սովետա-գերմանական ռազմաճակատում: Բայց այնուամենայնիվ այն բանում, որ իրադրությունը զարգացավ մեզ համար անբարենպաստ կերպով, նշանակալի դեր խաղացին հենց իր՝ Ստալինի խոշոր սխալները դրության գնահատման, ստրատեգիական պլանավորման և զորքերի ղեկավարման գործում: Ստալինը ընդունում էր վերմախտի հարձակման հնարավորությունը հարավում, սակայն գտնում էր, թե թշնամին հիմնական հարվածը կհասցնի Սովետական Բանակի կենտրոնական խմբավորման թևին՝ նպատակ ունենալով գրավեց Մոսկվան, թեպետև Պրիվոլժիեի և Կովկասի ուղղությամբ հարձակվելու վերաբերյալ հակառակորդի իրական մտադրություններն իր ժամանակին հաստատվել էին մեր հետախուզության կողմից: Գերագնահատելով մեր ձմեռային հարձակման հաջողությունները, Ստալինը հաշվի չառավ, որ ֆաշիստական բանակը կարողացել էր ուշքի գալ իր կրած պարտությունից հետո և վերականգնել էր իր հարձակողական հնարավորությունները:

Պատմական ճշմարտության լույսի տակ պետք է լիովին մերժել նաև այն տեսակետը, թե իբր Ստալինը վճռական դեր է խաղացել Վոլգոգրադի շրջանի գործողությունների պլանավորման ու ղեկավարման մեջ: Իր ժամանակին խիստ չափազանցվել էր նրա դերը այդ գործում: Բացի այդ, նրա մի քանի սկզբունքային որոշումները սխալ էին: Այսպես, օրինակ, նա 1942 թվականի օգոստոսի սկզբներին հրամայեց Վոլգոգրադը պաշտպանող ռազմաճակատը բաժանել երկու մասի, որը խիստ դժվարացրեց քաղաքի պաշտպանությունը, խախտեց փոխգործողությունը, պահանջեց թանկ ժամանակի աննպատակ կորուստ կազմակերպական զանազան միջոցառումների վրա: Մի քանի օր հետո հարկ եղավ նորից միասնական հրամանատարություն ստեղծել այդ երկու ռազմաճակատների համար, բայց արդեն բաց էին թողնվել պաշտպանության կազմակերպման համար նպաստավոր շատ հնարավորություններ:



Վոլգայի պատմական ճակատամարտը բաժանվում է երկու խոշոր ժամանակաշրջանի. պաշտպանական՝ 1942 թվականի հուլիսի 17-ից մինչև նոյեմբերի 18-ը և հարձակողական՝ 1942 թվականի նոյեմբերի 19-ից մինչև 1943 թվականի փետրվարի 2-ը:

Պաշտպանության չորս ամսվա ընթացքում բազմաթիվ շատ սուր մոմենտներ եղան: Հակառակորդը նշանակում էր քաղաքը գրավելու մի քանի ժամկետներ և ամեն օր կատաղի գրոհում էր մեր պաշտպանության վրա: Մենք այդ գրոհներին պատասխանում էինք հրետանու, ավիացիայի հարվածներով, հետևակի և տանկերի հակագրոհներով: Պաշտպանությունը չտեսնված ակտիվ բնույթ էր կրում: Վաշտերը, գումարտակները, գնդերն ու դիվիզիաները մահվան գնով կանգնած էին մինչև վերջ: Նրանք կարծես մեխվել էին մերձվոլգյան հողում: Չնայած հակառակորդի կատաղի ճնշմանը, մեր պաշտպանությունը դիմացավ: Ո՞րն էր նրա ուժը:



Ամենից առաջ մարդիկ, մեր մարտիկների բարձր գիտակցությունը, այն հանգամանքը, որ նրանք հասկանում էին իրենց պարտքը սոցիալիստական Հայրենիքի հանդեպ: Այդ գիտակցականությունը դաստիարակել էր Կոմունիստական պարտիան, որը ժողովրդի մեջ արթնացրել էր վիթխարի ուժեր, հաղթանակի անհողդողդ կամք, հավատ իր գործի արդարացիության նկատմամբ, արիություն, քաջություն և հերոսություն: Վոլգայի ափերին աննկուն կերպով կանգնած կոմունիստներին գլխավորում էր հավատարիմ լենինյան, մեր պարտիայի ու պետության ականավոր գործիչ ընկեր Ն. Ս. Խրուշչովը:

Մեր պաշտպանության հաջողությանը մեծապես նպաստում էին զինվորական օրգանիզմի բոլոր բջիջները առգրված բարձր կազմակերպվածությունը, բարձր պահանջկոտությունը և կարգապահությունը, ճկուն ղեկավարությունը բոլոր աստիճանի հրամանատարների ու շտաբների կողմից, որոնք ժամանակին ընդունում էին համապատասխան որոշումներ, հմտորեն օգտագործում էին մարտական և տեխնիկական միջոցները: Համարձակորեն կիրառվում էին մարտական տեխնիկայի օգտագործման նոր մեթոդները, մասնավորապես հրետանու զանգվածավորումը, ճակատային և բանակային ենթակայության հրետանային խմբերի ստեղծումը, որոնք վիթխարի դեր խաղացին:

Պաշտպանության գլխավոր ծանրությունն ընկած էր 62-րդ և 64-րդ բանակների զորքերի վրա, որոնց հրամանատարներն էին գեներալներ Վ. Ի. Չույկովը և Մ. Ս. Շումիլովը: Կատաղի պայքարի չորս ամսվա ընթացքում Վոլգոգրադը պաշտպանող մեր զորքերը բարոյական հաղթանակ տարան հակառակորդի դեմ, ընկճեցին թշնամու մարտական ոգին, վիթխարի կորուստներ պատճառեցին նրան և դրանով իսկ նպաստեցին հակահարձակման անցնելու պայմանների ստեղծմանը:

Վոլգայի ափերի պաշտպանությունը, որը զարմացրեց ամբողջ աշխարհին սովետական մարտիկների անօրինակ տոկունությամբ ու կայունությամբ, վիժեցրեց թշնամու բոլոր պլանները, հյուծեց ու արյունաքամ արեց նրա ուժերը: Գեբելսն իր ժամանակ հայտարարել էր, թե Վոլգայի ափին կանգնած քաղաքը Վերդենի նման մի անառիկ ամրոց է, բայց նա էլ չի դիմանա ֆյուրերի լեգեոնների հարձակմանը: Դա մի խարդախ հերյուրանք էր. Վոլգոգրադը ամրոց չէր բառիս սովորական իմաստով, այնտեղ չկային տևական ամրություններ, բերդապարիսպներ, խրամատներ ու բաստիոններ: Բայց նա մարմնավորում էր մեր մեծ ժողովրդի և նրա բանակի ոգու ամրությունը, և Հիտլերի հրոսախմբերը ի վիճակի չէին հաղթահարել այդ ամրոցը:



Դեռևս պաշտպանության ընթացքում ստորին-վոլգյան ստրատեգիական ուղղությունը պաշտպանող զորքերի շտաբները կոնկրետորեն և նպատակայնորեն կերպով նախապատրաստում էին մեր հակահարձակումը. ընտրվել էին գլխավոր հարվածների ամենից ավելի արդյունավետ ուղղությունները, նշվել ու նախապատրաստել էին ելակետային շրջանները՝ հյուսիսում, Սերաֆիմովիչի շրջանում, գեներալ Ա. Ի. Դանիլովի 21-րդ բանակի զորքերի կողմից, հարավում՝ լճերի միջև ընկած շրջանում, գեներալներ Ն. Ի. Տրուֆանովի և Ֆ. Ի. Տոլբուխինի բանակների կողմից:

Տևական պաշտպանության ընթացքում ծրագրված հակահարձակման գա-

ղափարի վերաբերյալ բազմիցս հայտնվել էր Զորակայան (Ստավկա)։ Մասնավորապես, 1942 թվականի հոկտեմբերի 6-ի փաստաթղթում ասվում էր, որ հակառակորդի ոչնչացման խնդրի լուծումը պետք է որոնել այն հարվածների մեջ, որ պետք է հասցնեն ուժեղ խմբերը հյուսիսից Կալաչի ուղղությամբ և Աբգաներովոյի ուղղությամբ ու ապա դեպի հյուսիս-արևմուտք։ Հոկտեմբերի 9-ի փաստաթղթում հակահարձակման մտահղացումը կոնկրետացվում և համակողմանիորեն հիմնավորվում էր։ Հետագայում Զորակայանի ցուցումով հակահարձակման օպերատիվ պլանավորման մեջ մտցվեցին Հարավ-Արևմտյան և Դոնի ռազմաճակատները։ Ամբողջությամբ վերցրած հակահարձակման պլանը երեք ռազմաճակատների՝ մեր, Հարավ-Արևմտյան (հրամանատար գեներալ Ն. Ֆ. Վատուտին) և Դոնի (հրամանատար գեներալ Կ. Կ. Ռոկոսովսկի) ռազմաճակատների հրամանատարության, Գլխավոր շտաբի և Զորակայանի կոլեկտիվ ստեղծագործության արդյունքն է։ Հակահարձակումը պլանավորված էր որպես 400 կիլոմետրանոց ռազմաճակատում ծավալվող ստրատեգիական գործողություն։ Այդ պլանի համաձայն սովետական զորքերը պետք է վիթխարի աքցանների մեջ սեղմեին հակառակորդի երկու բանակների ուժերը 100 կիլոմետր շառավիղ ունեցող տերիտորիայի վրա։ Ընդսմին ստեղծվում էին շրջապատման երկու ճակատներ՝ ներքին և արտաքին։ Մեր զորքերը պետք է ճեղքեին հակառակորդի պաշտպանությունը, ջախջախեին նրա ստորաբաժանումները հիմնական խմբավորման թևերում՝ Վոլգոգրադից հյուսիս-արևմուտք և հարավ, իսկ հետո, սրընթաց կերպով զարգացնելով ճեղքումը մոտեցող ուղղություններով, դուրս գալ Կալաչ և Սովետսկի բնակելի կետերի շրջանը և դրանով իսկ փակել շրջապատման օղակը։

Հակահարձակման նախապատրաստման ժամանակաշրջանում զորքերի մեջ լայնորեն ծավալվեց պարտիական-քաղաքական աշխատանքը։ Առանձնահատուկ ուշադրություն նվիրվեց շարժական միավորումներին։ Հիշում եմ, թե ինչպես 1942 թվականի հոկտեմբերի առաջին կեսին ես և Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովը այցելեցինք ռեզերվից եկած 90-րդ և 133-րդ տանկային բրիգադները։ Մենք մանրամասնորեն ստուգեցինք բրիգադների մարտունակությունը, նրանց նյութա-տեխնիկական ապահովումը։ 133-րդ բրիգադում ամբողջ անձնակազմը հավաքվեց միտինգի։ Հանդես գալով տանկիստների առջև, Նիկիտա Սերգեևիչը նրանց հանգամանորեն պատմեց ռազմաճակատում տիրող դրության մասին, կոչ արեց տանկիստներին համարձակ ու համառ լինել մարտերում։

Հակահարձակման անցնելու վերաբերյալ մեր ռազմաճակատի Ռազմական խորհրդի հրամանում մատնանշվում էր. «Գնալով մարտի, մենք գիտենք, որ մենք գնում ենք ազատագրելու ֆաշիստական գերության մեջ տանջվող եղբայրներին ու քույրերին։ Մեր ձեռքերում է, ընկերներ, Հայրենիքի բախտը, մեր մեծ սովետական ժողովրդի բախտը։ Մեզանից ու ձեզանից, մեր համառությունից ու հմտությունից է կախված, թե արդյո՞ք յուրաքանչյուր սովետական մարդ կապրի իր ազատ երկրում թե, որպես ստրուկ, ծնկի կգա բարոնի առջև... Մենք կարողացանք պաշտպանել Վոլգայի ամրոցը—մենք կկարողանանք կործանել և Վոլգայից շատ հեռու նետել թշնամու հորդաները»։

Նոյեմբերի 19—20-ին հազարավոր հրանոթների և ականանետների համազարկերը ազդարարեցին երեք ռազմաճակատների զորքերի հարձակման սկիզբը։ Հզոր գրոհով ճեղքվեց հակառակորդի պաշտպանությունը Հարավ-Արևմտյան և մեր ռազմաճակատների տեղամասերում։ Նոյեմբերի 23-ին 4-րդ



մեքենայացված կորպուսը գեներալ Վ. Տ. Վոլսկու հրամանատարությամբ Կալաչ և Սովետսկի բնակելի կետերի շրջանում միացավ Հարավ-Արևմտյան ռազմաճակատի 4-րդ տանկային կորպուսի (կորպուսի հրամանատար գեներալ Ա. Գ. Կրավչենկո) հետ։ Դրանով իսկ իրականացավ թշնամու ամբողջ խմբավորումը շրջապատելու մտահղացումը։ Արդեն հաջորդ օրը, նոյեմբերի 24-ին, Ն. Ս. Խրուշչովը Սովետսկի բնակավայրում էր։ Այստեղ, հանդես գալով մարտիկների առաջ, նա ասաց. «Ահա և կատարվեց այն, թանկագին ընկերներ, ինչի մասին մենք այդքան երկար երազում էինք և ինչին այդքան վաղուց նախապատրաստվում էինք։ Պաուլյուսի զորքերը փակված են օղակում և այլևս դուրս չեն պրծնի։ Այստեղ նրանք կջախջախվեն։ Մենք ձեզ հետ միասին նույնպես այդ մեծ պայքարի մասնակիցներն ենք»։

Գործողության առաջին էտապն ավարտելուց հետո հարկավոր էր շրջապատվածներին ստիպել կապիտուլյացիայի, թույլ չտալով, որ նրանք ճեղքեն օղակը և դրսից վերացնեն բլոկադան։ Հիտլերը և նրա կլիկը չէին ցանկանում հաշտվել պարտության հետ, նրանք դա թաքցնում էին գերմանական ժողովրդից։ Թշնամին հապճեպորեն կազմակերպեց մի հզոր տանկային տարան Կոտելնիկովոյի շրջանում։ «Ձմեռային ամպրոպ» կոդային անունը կրող այդ գործողության ընդհանուր ղեկավարությունը Հիտլերը հանձնարարել էր ֆելդմարշալ Մանշտեյնին։

Արտակարգ արիություն, անձնազոհություն և տոկունություն ցուցաբերեցին այն զորամասերի մարտիկները, որոնք ետ էին մղում հիտլերականների տարանային հարվածի գրոհը։ Նրանք թույլ չտվեցին թշնամիներին ճեղքել ու անցնել շրջապատված խմբավորման մոտ։ Այդ ժամանակ մարտերի շրջաններին մոտեցան ռեզերվները՝ 2-րդ գվարդիական բանակը՝ գեներալ Ռ. Յա. Մալինովսկու հրամանատարությամբ, որը ռազմաճակատի մյուս զորքերի հետ միասին խորտակիչ հակահարված տվեց թշնամուն, ջախջախեց նրան և դուրս եկավ Կոտելնիկովոյի շրջանը։ «Այդ ժամանակաշրջանում,— գրում է դեպքերի մասնակից, տանկային զորքերի հիտլերյան գեներալ Ֆոն Մելենտինը,— տեղի ունեցան ողբերգությամբ լի իրադարձություններ, որոնց պատմական նշանակությունը դժվար է գերագնահատել։ Չափազանցություն չի լինի ասել, որ այդ անհայտ գետակի (Աքսայ.—Ա. Ե.) ափերին տեղի ունեցած ճակատամարտը ճգնաժամի հասցրեց Երրորդ ռայխը, վերջ դրեց կայսրություն ստեղծելու Հիտլերի հույսերին և հանդիսացավ այն իրադարձությունների շղթայի վճռական օղակը, որոնք կանխորոշեցին Գերմանիայի պարտությունը»։

Իրենց շրջապատված խմբավորումն ազատելու համար թշնամու փորձերը լիկվիդացնելուց հետո մեկտեղ մեր օդաչուներն ու զենիթայինները կազմակերպեցին օդային բլոկադա, որը վիժեցրեց Գյորինգի պլանը՝ օդանավերով մատակարարել հիտլերյան զորքերին։ Այդ բանին նպաստեց նաև հակառակորդի օդանավակայանների գրավումը։

Շուտով նպաստավոր պայմաններ ստեղծվեցին թշնամու շրջապատված խմբավորումը վերջնականապես լիկվիդացնելու համար։ Այդ խնդիրը դրվեց Դոնի ռազմաճակատի զորքերի վրա, որի կազմի մեջ մտան նաև մեր ճակատի հիմնական ուժերը՝ 62-րդ, 64-րդ և 57-րդ բանակները։ «Օղակ» գործողության մտահղացումն էր՝ կիսել հակառակորդի շրջապատված զորքերը և նրանց լիկվիդացնել մաս առ մաս։ Մարտական գործողություններ սկսելուց առաջ թշնամական հրամանատարությանը ներկայացվեցին կապիտուլյացիայի պայման-

ները։ Սակայն դրանք մերժվեցին։ 1943 թվականի հունվարի 10-ից մինչև փետրվարի 2-ը ընկած ժամանակաշրջանում ֆելդմարշալ Պաուլյուսի զորքերը լիովին ջախջախվեցին։

***

Վոլգայի ճակատամարտին մասնակցեցին բազմաթիվ սովետական պանծալի զորահրամանատարներ։ Այստեղ իրենց անմահ սխրագործությունները կատարեցին 33 գվարդիականները, որոնք ոչնչացրին հակառակորդի 70 տանկ, լեյտենանտ Բասկակովի մարտկոցի զինվորները, սերժանտ Պավլովի մարտիկների խումբը, սնայպեր Զայցևը, ռազմածովային Պանիկակոն, կապավոր Պուտիլովը, օդաչուհի Լիտվյակը, հազարավոր ու հազարավոր հերոս մարտիկներ։ Հերոսություն, անձնազոհություն և հաղթանակի անհողդողդ կամք դրսևորեցին ոչ միայն առանձին մարտիկներ, այլև ամբողջ ստորաբաժանումներ, գնդեր, դիվիզիաներ, կորպուսներ և բանակներ։

Զորքերի մարտական հերոսությունը միաձուլվեց Վոլգոգրադի բանվորների աշխատանքային սխրանքին, մեր ամբողջ ժողովրդի անձնազոհ ձգտմանը՝ ռազմաճակատին տալ անհրաժեշտ ամեն ինչ։ Անվերջ հոսանքով մարտիկներին էին ուղարկվում նամակներ, ողջույններ, հեռագրեր, ծանրոցներ, և յուրաքանչյուր ուղերձի մեջ դրված էր սովետական հայրենասերների հոգու մի մասնիկը։

Վոլգայի ափին տեղի ունեցած մարտական մեծ սխրագործությունը արձագանք է գտնում կոմունիստական հասարակարգի կառուցման, գիտության ու տեխնիկայի առաջադիմության բնագավառում մեր ժողովրդի հիասքանչ սխրանքներում։ Պատմական ճակատամարտի քսանամյակը համընկավ խաղաղասեր ուժերի հաղթանակի հետ, որոնք կանխեցին Կարաիբյան ծովում եղած ճգնաժամի կապակցությամբ մարդկության վրա կախված ջերմամիջուկային պատերազմը։

Սովետական ժողովուրդը խաղաղություն է ցանկանում։ Սակայն Վոլգայի ափերին նվաճած հաղթանակի նշանակալի տարելիցի օրերին տեղին է հիշեցնել, որ մեր ժողովուրդը ոչ թույլ է և ոչ էլ վախկոտ, բայց խաղաղասեր է։ Անցած պատերազմը ակնառու կերպով ցուցադրեց Սովետական Միության անգերազանցելի ուժն ու հզորությունը։ Այժմ մենք ունենք աշխարհում ամենահզոր և կատարյալ զենքը։ Դա պետք է հաշվի առնեն նրանք, ովքեր ուժի քաղաքականություն են քարոզում սոցիալիստական երկրների համագործակցության նկատմամբ։

Վոլգայի ամրոցի պաշտպանների մոտ սովետական մարդկանց ցուցաբերած աննկուն արիության օրինակը դարեր շարունակ կհիշվի որպես սովետական ժողովրդի և նրա ոգեշնչողի՝ Կոմունիստական պարտիայի հայրենասիրական և ինտերնացիոնալ ձգտումների անքակտելի միասնության սիմվոլ։

«Պրավդա», № 27, 27 հունվարի, 1963 թ.։

---

# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՁԵՎԱՎՈՐՄԱՆ ՀԻՄՆԱԿԱՆ ՈՒՂԻՆԵՐԸ

Կ. ԲՈՍՏԱՆՋՅԱՆ

Մեր երկիրը հասել է այնպիսի բարձունքների, որտեղից պարզորոշ ուրվագծվել են կոմունիզմ տանող ուղիները։ Սոցիալիզմի ամրապնդման շնորհիվ մեծ չափով ընդլայնվել են կոմունիստական ապագայի գիտական կանխատեսման և ամբողջ հասարակական կյանքի պլանաչափ ու արագ զարգացման հնարավորությունները։ Պարտիայի նոր Ծրագիրը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման հետ միասին, նախատեսում է սոցիալիստական հասարակական հարաբերությունները աստիճանաբար վերափոխել կոմունիստական հարաբերությունների և պատմական կարճ ժամանակամիջոցում Սովետական Միությունում կառուցել կոմունիստական հասարակարգ։

Սոցիալիստական հասարակական հարաբերությունների հետագա կատարելագործումը և դրանց աստիճանաբար կոմունիստականի վերաճելը բարդ, հակասական և, միաժամանակ, օրինաչափ պրոցես է։ Այն տեղի է ունենում հասարակության կյանքի բոլոր բնագավառներում և, ինչպես նշեց Ն. Ս. Խրուշչովը՝ «Ո՛չ միայն էկոնոմիկան և քաղաքականությունը, այլև մարդկանց կենցաղը, կուլտուրան, հոգեբանությունը, գիտակցությունը ծառայում են որպես նոր հարաբերությունների՝ բարեկամության, ընկերության, փոխօգնության ու կոլեկտիվիզմի հարաբերությունների ակտիվ ձևավորման դաշտ» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 111)։

Հասարակական հարաբերությունների զարգացման գլխավոր բնագավառն արտադրությունը, էկոնոմիկան է։ Արտադրողական ուժերի զարգացման, հանրային հարստության բազմապատկման հիման վրա կատարելագործվող սոցիալիստական արտադրական, տնտեսական հարաբերությունները պայմանավորում են սովետական հասարակության սոցիալական կառուցվածքի աստիճանական վերափոխությունը, հասարակական մյուս հարաբերությունների կատարելագործումը, կոմունիստական հարաբերությունների ձևավորման ընդհանուր պրոցեսը։ Վերջինս օրգանապես կապված է, մի կողմից տնտեսական բնագավառի գլխավոր խնդրի՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման և, մյուս կողմից՝ կոմունիստական հասարակարգի մարդու ձևավորման պրոբլեմի հետ։

***

Սոցիալիստական արտադրական և հասարակական մյուս հարաբերությունների հետագա զարգացումը կատարվում է աստիճանաբար։ Թե՛ սոցիալիստա-

կան և թե՛ կոմունիստական հարաբերություններն արտադրության միջոցների հանրային սեփականության հիման վրա շահագործման ու կեղեքման ձևերից ազատ մարդկանց ընկերականության և բարեկամության հարաբերություններ են։ Սոցիալիստական հասարակական հարաբերությունները կոմունիստական հարաբերություններից տարբերվում են ոչ թե իրենց սոցիալական էությամբ, այլ հասունության աստիճանով։ Այդ պատճառով սոցիալիստական հարաբերությունների հետագա զարգացումը տեղի է ունենում ոչ թե սոցիալական ռևոլյուցիայի միջոցով, ինչպես շահագործողական, հակամարտ հասարակարգերում, այլ աստիճանական վերափոխությունների ձևով։ Սոցիալիստական հարաբերությունների կատարելագործումը և նրանց աստիճանական վերափոխումը կոմունիստականի, հանդիսանում է նրանց զարգացման յուրահատուկ ձևը։

Սոցիալիզմն իբրև կապիտալիզմի ընդերքից ելած և ոչ իր սեփական հիմքի վրա զարգացող հասարակական (սոցիալական) օրգանիզմ, շատ տեսակետներից դեռևս իր վրա է կրում հին հասարակարգի դրոշմը։ Վերջ տալով մարդկանց բաժանմանը հակամարտ, թշնամական դասակարգերի և դրա հիման վրա հաղթահարելով քաղաքի ու գյուղի, ֆիզիկական ու մտավոր աշխատանքի հակադրությունը, հասարակությունն իր զարգացման սոցիալիստական աստիճանում վճռական քայլ է կատարում հասարակական անհավասարության այս և մյուս ձևերի հաղթահարման ուղղությամբ։ Բայց միանգամից հնարավոր չէ վերացնել սոցիալական բոլոր տարբերությունները և այդ պատճառով ընկերականության, բարեկամության ու կոլեկտիվիզմի սոցիալիստական հարաբերությունները դեռևս սոցիալական տարբերությունները լրիվ չհաղթահարած մարդկանց հասարակական հարաբերություններ են։

Միայն կոմունիզմն է, որ վերաճելով սոցիալիզմից և զարգանալով իր սեփական հիմքի վրա, լիովին վերացնում, բացառում է սոցիալական անհավասարության բոլոր ձևերը, դրանց այն բոլոր մնացորդները, որոնք սոցիալիզմը ժառանգել էր կապիտալիստական հասարակարգից և որոնք դժվարացնում են նրա տնտեսական ու կուլտուրական առաջընթացը։ Կատարելագործել սոցիալիստական հասարակական հարաբերությունները և դրանք աստիճանաբար վերափոխել կոմունիստական հարաբերությունների, նշանակում է հետզհետե հաղթահարել սոցիալական անհավասարության մնացորդները և այդպիսով սոցիալիստական հավասարությունից անցնել կոմունիստական հավասարության: Դրա արտահայտությունն անդասակարգ կոմունիստական հասարակարգի ձևավորումն է։

Կոմունիզմը, ՍՄԿՊ Ծրագրի բնութագրությամբ, արտադրության միջոցների միասնական համաժողովրդական սեփականության և հասարակության բոլոր անդամների սոցիալական լիակատար հավասարության վրա խարսխված անդասակարգ հասարակարգն է։ Կոմունիստական հասարակական հարաբերությունների ձևավորման պրոցեսի գլխավոր խնդիրն է սոցիալիզմի օրոք դեռևս պահպանված դասակարգային տարբերությունների վերացումն ու սոցիալական բոլոր խմբերի՝ բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ինտելիգենցիայի միաձուլումը միասնական անդասակարգ հասարակության մեջ։

Սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակը մեր երկրում արտահայտվեց նրանում, որ սոցիալիստական միասնական տնտեսակարգի հիման վրա ուժեղացավ հասարակության սոցիալական համասեռությունը, աշխատավոր դասակարգերն ու սոցիալական խմբերն ավելի համախմբվեցին ու մերձե-



ցան։ Այս իմաստով Սովետական Միությունում «բանվոր դասակարգի և գյուղացիության տարբերությունները վճռական, գլխավոր հարցերում հաղթահարված են» (Նույն տեղում, էջ 110):

Ներկայումս, ինչպես նշվեց ՍՄԿՊ XXII համագումարում, դասակարգային փոխհարաբերությունները թևակոխել են իրենց զարգացման այն էտապը, երբ արտադրողական ուժերի բարձր զարգացման և սոցիալիստական արտադրահարաբերությունների կատարելագործման հիման վրա տեղի է ունենում դասակարգային սահմանների վերջնական վերացում։

Անդասակարգ կոմունիստական հասարակարգի, նրա հարաբերությունների ձևավորման այդ ընդհանուր՝ սովետական երկրում առաջին անգամ հարթվող ճանապարհին անհրաժեշտ է աստիճանաբար հաղթահարել քաղաքի և գյուղի, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև այժմ գոյություն ունեցող էական տարբերությունները։

Այդ նպատակի իրականացման համար ամենից առաջ հարկավոր է ստեղծել կոմունիզմի նյութատեխնիկական բազան։ Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը, այսինքն՝ երկրի համատարած էլեկտրիֆիկացումը, արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության կոմպլեքսային մեքենայացումն ու լայն ավտոմատացումը, ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում քիմիայի կիրառումը, գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների ներդրումն արտադրության մեջ և նման այլ միջոցառումներ հնարավորություն կտան արտադրողական ուժերի զարգացմամբ և աշխատանքի բնույթով գյուղը հասցնել քաղաքի մակարդակին։ Էլեկտրական էներգիայի լայն օգտագործման, արտադրության կոմպլեքսային մեքենայացման շնորհիվ գյուղատնտեսական աշխատանքն էներգա-տեխնիկական զինվածության ասպարեզում աստիճանաբար կմոտենա արդյունաբերական աշխատանքին, իսկ կոլտնտեսականներն իրենց տեխնիկական գիտելիքներով կհասնեն ֆաբրիկա-գործարանային բանվորներին։ Արտադրողական ուժերի նմանօրինակ զարգացման շնորհիվ գյուղատնտեսական աշխատանքը հետզհետե կվերածվի արդյունաբերական աշխատանքի տարատեսակի։ Այսպիսով, կոմունիզմին հատուկ նյութատեխնիկական բազայի, հզոր արտադրողական ուժերի ստեղծման ու զարգացման ընթացքում չնչվում, վերանում է աշխատանքի հասարակական բաժանման, հետևաբար և սոցիալ-տնտեսական հարաբերությունների այնպիսի մի հին արտահայտություն, ինչպիսին է աշխատանքի բաժանումը արդյունաբերության ու գյուղատնտեսության, քաղաքի և գյուղի միջև իր այժմյան առումով։

Քաղաքի և գյուղի միջև գոյություն ունեցող տարբերությունները ո՛չ միայն նրանց արտադրողական ուժերի զարգացման մակարդակի և աշխատանքի բնույթի, այլև սոցիալիստական արտադրահարաբերությունների, ամենից առաջ, վերջիններիս հիմքի և որոշիչ կողմի՝ սոցիալիստական սեփականության երկու ձևերի տարբերություններն են։ Այդ պատճառով քաղաքի ու գյուղի էական տարբերությունների հաղթահարման երկրորդ գլխավոր միջոցն ու ուղին արտադրության միջոցների կոլտնտեսային և համաժողովրդական սեփականության աստիճանական մերձեցումն է, որը տեղի է ունենում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման պրոցեսում և կհանգեցնի նրանց միաձուլմանը կոմունիստական համաժողովրդական միասնական սեփականության մեջ։

Սոցիալիստական սեփականությունը, իբրև գերազանցապես արտադրության միջոցների յուրացման հասարակական ուրույն ձև, բազմապատկվում է միայն բուն արտադրության պրոցեսում ազատ աշխատավորների ընկերական համագործակցության ու բարեկամական անշահախնդիր փոխօգնության շնորհիվ։ Այդ իր վառ արտահայտությունն է գտնում սոցիալիստական արտադրության բոլոր ճյուղերում առաջավոր տնտեսությունների, արտադրության առաջավորների կուտակած հարուստ փորձի մասսայական արմատավորման մեջ և կարող է անգնահատելի դեր խաղալ ինչպես արդյունաբերական, այնպես էլ գյուղատնտեսական արտադրության վերելքի գործում, հետևաբար և համաժողովրդական ու կոլտնտեսային սեփականության ամրապնդման և հետագա զարգացման ասպարեզում։ Ահա թե ինչու պարտիան հատուկ նշանակություն է տալիս ոչ միայն գիտության ու տեխնիկայի նվաճումների, այլև արտադրության բոլոր ոլորտներում առաջավորների փորձի լայն արմատավորմանը, դրանք դիտելով որպես սոցիալիստական արտադրության և հասարակական նոր հարաբերությունների զարգացման առաջադիմական ուղի ու ձև։

Տնտեսապես ետ մնացող կոլտնտեսություններն առաջավոր կոլտնտեսությունների ու սովխոզների մակարդակին հասցնելը, բոլոր կոլտնտեսությունների արտադրական ֆոնդերի աճը, նրանց տնտեսական համընդհանուր վերելքը կոլտնտեսային գյուղի հասարակական հարաբերությունների զարգացման ու կատարելագործման կարևորագույն նախապայմանն են։ Կոլտնտեսականների համընդհանուր տնտեսական վերելքի բազայի վրա անհրաժեշտաբար կզարգանան ներկոլտնտեսային և միջկոլտնտեսային հարաբերությունները, ինչպես նաև կընդլայնվեն կոլտնտեսությունների, սովխոզների և տեղական արդյունաբերական ձեռնարկությունների արտադրական կապերը։ Այս բոլոր պրոցեսները մի կողմից բարենպաստ սոցիալ-տնտեսական պայմաններ կստեղծեն տարվա ընթացքում աշխատանքի և արտադրական ռեսուրսների առավել հավասարաչափ և լրիվ օգտագործման համար և, մյուս կողմից, «կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականությանը հետզհետե համաժողովրդական բնույթ կտան» (նույն տեղում, էջ 505)։ Այսպիսով, արտադրողական ուժերի բուռն վերելքի հիման վրա կոլտնտեսային սեփականությունը կմերձանա համաժողովրդական առաջատար սեփականությանը, տեղի կունենա աստիճանական անցում դեպի մեկ միասնական կոմունիստական սեփականություն։

Քաղաքի ու գյուղի միջև ներկայումս գոյություն ունեցող տարբերությունների հաղթահարումը կհանգեցնի նրանց կուլտուր-կենցաղային տարբերությունների վերացմանը։ Արտադրողական ուժերի զարգացման բազայի վրա կոլտնտեսությունների, սովխոզների և տեղական արդյունաբերական ձեռնարկությունների միջև ուժեղացող արտադրական կապերը կհանգեցնեն այն բանին, որ աստիճանաբար կստեղծվեն ագրարա-արդյունաբերական միավորումներ, որոնցում գյուղատնտեսությունն օրգանապես կզուգորդվի նրա արտադրանքի արդյունաբերական վերամշակման հետ, գյուղերը հետզհետե կվերածվեն քաղաքատիպ խոշորացված բնակավայրերի, վերջիններիս հատուկ «բարեկարգ բնակելի տներով, կոմունալ սպասարկումով, կենցաղային ձեռնարկություններով, կուլտուրական և բժշկական հիմնարկներով։ Վերջին հաշվով կուլտուր-կենցաղային պայմաններով գյուղական բնակչությունը կհավասարվի քաղաքի բնակչությանը» (նույն տեղում, էջ 507)։



***

Դասակարգային սահմանների ջնջման և սոցիալական լիակատար հավասարության հասնելու համար կոմունիստական հարաբերությունների ձևավորման ճանապարհին քաղաքի և գյուղի էական տարբերությունների հաղթահարումից բացի, անհրաժեշտ է վերացնել նաև մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև սոցիալիզմի օրոք պահպանված էական տարբերությունները։

Հասարակական աշխատանքի բաժանման այս հին ձևը, որը գոյացել է հազարամյակների ընթացքում, ինչպես և աշխատանքի բաժանումն արդյունաբերության ու գյուղատնտեսության միջև, աստիճանաբար վերանում են կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ու զարգացման, նրա բարերար ազդեցության շնորհիվ։ Արտադրության կոմպլեքսային մեքենայացման և ավելի լայն ավտոմատացման շնորհիվ փոխվում է աշխատանքի բնույթը, հետզհետե մահանում են ծանր, հոգնեցուցիչ աշխատանքի հետ կապված մասնագիտությունները, առաջանում են այնպիսի մասնագիտություններ, որոնք ֆիզիկական աշխատանքը ներդաշնակորեն զուգակցում են մտավորի հետ։

Համակողմանի տեխնիկական առաջընթացի հիման վրա, գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումներն արտադրության մեջ կիրառելու շնորհիվ բանվորների ու գյուղացիների կուլտուր-տեխնիկական մակարդակն աստիճանաբար կհասնի մտավոր աշխատանք կատարողների մակարդակին։ Այդ բանում կարևոր դեր է խաղալու նաև ուսուցման միացումն արտադրողական աշխատանքի հետ։ Մարդու ներդաշնակ զարգացման համար անհրաժեշտ ֆիզիկական աշխատանքը ոչ թե կվերանա, այլ կթեթևանա ու կմիանա, կձուլվի մտավոր աշխատանքի հետ։ Մարդկանց արտադրական գործունեության մեջ ֆիզիկական ու մտավոր աշխատանքի օրգանական միացումով «ինտելիգենցիան կդադարի սոցիալական առանձին խավ լինելուց...» (նույն տեղում, էջ 484)։

Քաղաքի ու գյուղի, ֆիզիկական ու մտավոր աշխատանքի տարբերությունների հաղթահարման վերը շարադրված պրոցեսներն օրգանապես կապված են միմյանց հետ, բայց դրանց պատմական շրջանակները մասամբ տարբեր են։ Քաղաքի ու գյուղի սոցիալ-տնտեսական և կուլտուր-կենցաղային տարբերությունների անհետացման պրոցեսը նախորդում է մտավոր ու ֆիզիկական աշխատանքի էական տարբերությունների վերացմանը և դրանով իսկ վճռական պայմաններ ստեղծում «ֆիզիկական ու մտավոր աշխատանքի օրգանական միացման համար» (նույն տեղում, էջ 238)։

***

Քաղաքի և գյուղի, ֆիզիկական ու մտավոր աշխատանքի միջև գոյություն ունեցող էական տարբերությունների աստիճանական հաղթահարման ընթացքում հետզհետե կվերանան նաև տնտեսական անհավասարության այն մնացորդները, որոնք կապված են նյութական ու կուլտուրական բարիքների բաշխման սոցիալիստական հարաբերությունների հետ և որոնց կատարելագործումը կազմում է սոցիալիզմի օրոք առկա սոցիալական տարբերությունների հաղթահարման ընդհանուր պրոցեսի կարևոր կողմերից մեկը։

Ինչպես հայտնի է, սոցիալիզմի պայմաններում տիրապետում է ըստ աշ-

խատանքի բաշխման սոցիալիստական սկզբունքը։ Բաշխման ոլորտում հասարակական հարաբերությունները կատարելագործելիս պարտիան ելնում է «...այն բանից, որ քանի դեռ նյութական բարիքների առատություն չի ստեղծվել, իսկ աշխատանքն էլ չի դարձել յուրաքանչյուր մարդու առաջնահերթ կենսական պահանջմունքը, հիմք չկա հրաժարվելու բաշխման սոցիալիստական սկզբունքից, թուլացնելու աշխատանքի չափի ու սպառման չափի նկատմամբ հասարակության և պետության կողմից եղած վերահսկողությունը» (Նույն տեղում, էջ 108)։

Նյութական ու կուլտուրական բարիքների բաշխումն ըստ աշխատանքի քանակի ու որակի կրում է սոցիալիստական բնույթ, որովհետև այն կարող է առաջանալ և գոյություն ունենալ միմիայն արտադրության միջոցների հանրային, սոցիալիստական սեփականության հիման վրա, հասարակական անհավասարության գլխավոր ձևի՝ մարդկանց հակամարտ դասակարգերի բաժանվածության ոչնչացման շնորհիվ։ Այդ սկզբունքի կիրառմամբ հասարակության բոլոր անդամները հավասար աշխատանքի համար ստանում են հավասար վարձատրություն, որը և սոցիալիստական հավասարության արտահայտություններից մեկն է։ Բայց, քանի որ բուն արտադրության պրոցեսում ու կենցաղում սովետական մարդկանց միջև գոյություն ունեն այնպիսի էական տարբերություններ, ինչպիսիք են՝ նրանց աշխատանքի տեխնիկական զինվածության, որակավորման, ընտանիքների կազմի և այլ տարբերությունները, աշխատանքի վարձատրության ասպարեզում հավասար չափանիշ կիրառելը անմիջական պատճառ է այն բանի, որ մարդիկ նյութական ապահովվածության տեսակետից հավասար չեն։

Սովետական հասարակության քաղաքացիների միջև այս կարգի տնտեսական անհավասարության մնացորդները կհաղթահարվեն միայն արտադրողական ուժերի հետագա զարգացման, արտադրության ու բաշխման կազմակերպման սոցիալիստական սկզբունքները հետևողականորեն կիրառելու միջոցով։

Կոմունիստական հավասարությունն այս բնագավառում ևս ստեղծվում է աստիճանաբար։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման, հանրային հարստության աճին համեմատ, հետզհետե կկրճատվի աշխատավարձի մակարդակների միջև այժմ գոյություն ունեցող տարբերությունը։ Աշխատավորների որակական աստիճանի բարձրացման շնորհիվ առաջիկա տասնամյակում Սովետական Միությունում կվերանան ցածր վարձատրվող բանվորների ու ծառայողների կատեգորիաները։ Կոլտնտեսությունների տնտեսական վերելքի և արտադրության հանրայնացման աստիճանի բարձրացմանը զուգընթաց աշխատանքի նորմավորման, կազմակերպման ու վարձատրության ձևերը հետզհետե կմոտենան պետական ձեռնարկություններում գոյացած ձևերին ու մակարդակին, բոլոր կոլտնտեսություններում կանցնեն ամենամսյա երաշխավորված վարձատրության։ Հենց այս ձևով է, որ «...բնակչության բարեկեցության աստիճանով գյուղը կհասնի քաղաքի մակարդակին» (Նույն տեղում, էջ 484)։

Հասարակական բարիքների բաշխման հարաբերությունների զարգացման մեջ գնալով կարևոր դեր կխաղան սպառման հասարակական ֆոնդերը, որոնք բաշխվում և օգտագործվում են ձրի։ Հասարակական հարստության աճին հա-



մեմատ արագորեն կավելանան այդ ֆոնդերը և ըստ աշխատանքի վարձատրության աշխատավորների նյութական շահագրգռվածության սկզբունքի հետ զուգակցված անմիջականորեն կտանեն դեպի կոմունիստական բաշխում՝ ինչպես արդյունաբերության, այնպես էլ գյուղատնտեսության ասպարեզում։ Երբ կոմունիզմի արտադրողական ուժերի ստեղծման, նյութական ու կուլտուրական բարիքների առատության հիման վրա կոլտնտեսային ու պետական սեփականության միաձուլումից կառաջանա կոմունիստական միասնական համաժողովրդական սեփականություն, հասարակության բոլոր անդամները ոչ միայն արտադրության միջոցների նկատմամբ կգտնվեն միատեսակ հարաբերությունների մեջ, այլև կունենան աշխատանքի ու բաշխման հավասար պայմաններ։ Միավորված արտադրողների (Կարլ Մարքսի արտահայտությամբ) մարդկային բնույթին առավել արժանի ու լիովին համապատասխանող այդպիսի պայմաններում յուրաքանչյուրի կրթության, աշխատանքային գործունեության, ունակությունների զարգացման համար կստեղծվեն հավասար հնարավորություններ (տես Կ. Մարքս, Կապիտալ, հատ. III, II մաս, էջ 360)։

Աշխատանքի ու բաշխման հավասար պայմաններում ամեն ոք իր հակումներին համապատասխան, հաշվի առնելով, իհարկե, հասարակության շահերը, կկարողանա ազատ ընտրել մասնագիտություն և փոխել այն։ Կրթություն ձեռք բերելու, մասնագիտություն ընտրելու, աշխատանքի տեսակների հերթափոխման ասպարեզում հավասարության պահանջների և անձնական հակումների նմանօրինակ ներդաշնակ զուգակցումը, որը ենթադրում է մարդկանց բարձր գիտակցականություն, համակողմանի զարգացում, հանդիսանում է սոցիալիստական հասարակական հարաբերությունների աստիճանական կատարելագործման և կոմունիստական հավասարության հաստատման հանրագումարային խոշորագույն արդյունքներից, նրա կարևորագույն արտահայտություններից մեկը։

Տնտեսական զարգացման և հասարակական հարաբերությունների հասունության այդ բարձր աստիճանում, երբ նյութական ու կուլտուրական բարիքների իսկական առատություն կստեղծվի և հասարակության բարօրության համար ըստ հակումների հոժարակամ կերպով աշխատելը կդառնա բոլորի համար գիտակցված անհրաժեշտություն, հասարակությունը կանցնի ըստ պահանջմունքների բաշխման կոմունիստական սկզբունքին։ Անցումը՝ նյութական արտադրության ու բաշխման կազմակերպման սոցիալիստական սկզբունքից կոմունիստական բարձրագույն սկզբունքին, կարտահայտվի նրանում, որ մարդկային գործունեության հավասար պայմաններում, յուրաքանչյուրն աշխատելով ըստ ընդունակությունների, նյութական ու կուլտուրական բարիքներից կօգտվի ըստ իր աճող բանական պահանջմունքների, անհատական կարիքների ու ճաշակի։ Նշանակում է, սոցիալիստական հասարակական հարաբերությունների աստիճանական կատարելագործման շնորհիվ հաստատվող կոմունիստական հավասարությունը, հակառակ կոմունիզմի ամեն կարգի թշնամիների բամբասանքների, որպես սոցիալական (հասարակական) լիակատար հավասարություն, ամենևին չի ժխտում, այլ ենթադրում է մարդկանց անհատական տարբերությունները՝ նրանց ընդունակությունների, հակումների, անհատական ճաշակի ու կարիքների տեսակետից։

Այսպիսով, սոցիալիստական արտադրության, փոխանակության, բաշխման և համատեղ սպառման պրոցեսում սովետական հասարակության անդամ-

ների, աշխատավոր դասակարգերի ու սոցիալական խմբերի միջև գոյություն ունեցող նյութական հասարակական հարաբերությունների հետագա աստիճանական զարգացումն ու կատարելագործումը բնապատմական անհրաժեշտությամբ տանում է դեպի կոմունիստական հասարակական կեցության ձևավորում:

Հասարակական կեցության այդ բարձրագույն ձևի հիման վրա ի վերջո կձևավորվեն նաև հասարակական մյուս հարաբերությունները: Հասարակական կեցության կոմունիստական եղանակի, ամենից առաջ, կոմունիստական տնտեսական հարաբերությունների ձևավորման ընթացքում խոր, արմատական փոփոխություններ տեղի կունենան գաղափարական հարաբերությունների բնագավառում, հասարակական վերնաշենքում, որտեղ վճռական դերը պատկանում է քաղաքական-իրավական հարաբերություններին: Եթե սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակի, աշխատավոր դասակարգերի և սոցիալական խմբերի՝ բանվորների, գյուղացիների, ինտելիգենցիայի հետագա մերձեցման շնորհիվ պրոլետարիատի դիկտատուրայի պետությունը վերաճեց համաժողովրդական պետության, ապա դասակարգային տարբերությունների մնացորդների հաղթահարման և կոմունիստական հասարակարգի մարդու ձևավորման պրոցեսում սոցիալիստական պետականությունն աստիճանաբար «... կվերափոխվի հասարակական կոմունիստական ինքնավարության, որի մեջ կմիավորվեն Սովետները, արհեստակցական, կոոպերատիվ և աշխատավորների մյուս մասսայական կազմակերպությունները»: Ըստ որում տնտեսության և կուլտուրայի զարգացման ղեկավարման, պլանավորման ու հաշվառման օրգանները, «... որոնք այժմ պետական օրգաններ են, կկորցնեն քաղաքական բնույթը և կդառնան հասարակական ինքնավարության օրգաններ» (նույն տեղում, էջ 532), որովհետև դասակարգային սահմանները ջնջվելուց հետո Սովետական Միության ներքին կյանքում քաղաքականության մասին, որպես դասակարգային հարաբերությունների յուրահատուկ արտահայտության, ըստ էության, խոսք լինել չի կարող:

Սոցիալ-տնտեսական հարաբերությունների կոմունիստական վերափոխության որոշիչ դերի հիման վրա, կատարելագործվող սոցիալիստական վերնաշենքի բարերար ազդեցության շնորհիվ, գնալով կուժեղանա քաղաքացիների գիտակցական ինքնակարգապահությունը: Աստիճանաբար կընդլայնվի բարոյական գործոնի՝ հասարակական կարծիքի ազդեցության ոլորտը և համապատասխանորեն կնվազի «...մարդկանց փոխհարաբերությունների վարչական կարգավորման նշանակությունը» (նույն տեղում, էջ 542): Կամրապնդվեն ու կզարգանան կոմունիստական համակեցության կանոնները, որոնց կիրառումը հետզհետե բոլոր մարդկանց համար կդառնա ներքին պահանջ ու սովորություն:

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, հզոր արտադրողական ուժերի զարգացման հիման վրա սոցիալիստական հասարակական հարաբերությունները աստիճանաբար կվերափոխվեն կոմունիստականի. դրան զուգընթաց խոր վերափոխություն տեղի կունենա նաև մարդկանց գիտակցության մեջ:

Մարդկային համակեցության այդ բարձրագույն ձևի՝ կոմունիստական ամենաարդարացի ու կատարյալ հասարակարգի կառուցումը դարձել է Կոմունիստական պարտիայի, սովետական ժողովրդի գործնական խնդիրը:

---

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ԵՎ ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԱԴԻՄՈՒԹՅՈՒՆԸ

Բ. Ե. ՍԱՐԿԻՍՈՎ

Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի Գիտահետազոտական աշխատանքների կոորդինացման Պետական Կոմիտեի նախագահ

ՍՄԿՊ Կենտկոմի Նոյեմբերյան պլենումի որոշումներում, որտեղ նշված են ժողովրդական տնտեսության պարտիական ղեկավարման վերակառուցման և տնտեսական շինարարության կառավարման կատարելագործման կարևորագույն միջոցառումները, զգալի տեղ են գրավում նաև սովետական գիտության ու տեխնիկայի առավել արագ զարգացման, դրանց նվաճումներն արտադրության մեջ լայնորեն արմատավորելու, տեխնիկական առաջադիմության հարցերը: Եվ դա միանգամայն հասկանալի է, որովհետև անհնարին է անտեսել գիտության հսկայական դերը սոցիալիստական հասարակարգի նյութական և հոգևոր կյանքի արժեքների ստեղծման գործում:

Վ. Ի. Լենինը պահանջում էր, որ գիտությունը մեզ մոտ չմնա որպես մեռած տառ կամ մոդայական ֆրազ, այլ միս ու արյուն դառնա, ամբողջովին վերածվի մեր կենցաղի բաղադրիչ մի տարրի: Ղեկավարվելով լենինյան այդ ցուցումով, Կոմունիստական պարտիան միշտ էլ իր ուշադրության կենտրոնում է պահել գիտական ստեղծագործության հարցերը, որպեսզի Սովետական պետության մեջ տնտեսական և կուլտուրական շինարարությունն ընթանա իսկական գիտական հիմունքներով:

Լուծելով պարտիական և տնտեսական շինարարության, ժողովրդական տնտեսության ղեկավարման արմատական հարցերն ու պրոբլեմները, ՍՄԿՊ Կենտկոմի Նոյեմբերյան պլենումը միաժամանակ պարտիայի, ամբողջ սովետական ժողովրդի ուշադրությունը բևեռեց գիտության, տեխնիկական առաջադիմության հետագա, ավելի բուռն ծաղկման վրա, դա համարելով կոմունիզմի ուղիով սովետական հասարակության հաջող առաջընթացի վճռական պայմաններից մեկը:

Արտադրության հետ գիտության օրգանական և սերտ միացումը բարձրացնում է գիտական և տեխնիկական առաջադիմության, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման տեմպերը: Սոցիալիստական արտադրաեղանակի պայմաններում գիտության և տեխնիկայի ծաղկումը հնարավորություն է տալիս բնության ուժերն ու հարստություններն ավելի արդյունավետ օգտագործելու ժողովրդի օգտին, հայտնագործելու էներգիայի նոր աղբյուրներ,

ստեղծելու նոր նյութեր, մշակելու կլիմայական պայմանների վրա ներգործելու
եղանակներ ու մեթոդներ: Գիտությունը հասարակության արտադրողական
ուժերի հզոր աճի վճռական գործոնն է:

***

Դժվար է պատկերացնել տեխնիկական առաջադիմությունը առանց գիտու-
թյան՝ ֆիզիկայի, քիմիայի, մաթեմատիկայի, մեխանիկայի նորագույն նվա-
ճումների կիրառման: Զնսեմացնելով պրակտիկ փորձի նշանակությունն ար-
տադրության կատարելագործման ասպարեզում, պետք է ասել, որ գիտության
հաջողությունները հնարավորություն են տալիս նոր, արժեքավոր հայտնագոր-
ծություններ անել՝ շրջանցելով արտադրական տևական փորձը: Ֆունդամենտալ
գիտությունների զարգացումը տեխնիկայի և ամբողջ ժողովրդական տնտեսու-
թյան զարգացման պարտադիր և անհրաժեշտ նախապայմանն է. նա դառնում
է տեխնիկական առաջադիմության կայուն հիմքը, խոշոր տեղաշարժեր է առա-
ջացնում տեխնիկայի մեջ:
Ժամանակակից գիտությունը խորապես թափանցում է բնության գաղտ-
նիքների մեջ: Նա քննում, ուսումնասիրում է նյութերի էությունը, որպեսզի
տիրապետի դրանց մեջ նիրհած ուժերին, դրանց արթնացնի հավիտենական
քնից, բացահայտի արտադրության նոր տեսակներ, կատարելագործի գոյու-
թյուն ունեցողները, հայտնագործի տեխնիկական բուռն առաջադիմության
վիթխարի հնարավորությունները: Հետախուզելով բնության գաղտնիքները,
ֆունդամենտալ գիտություններն ստեղծում են նոր տեխնիկայի հիմունքները:
Դրանց հետագա զարգացումը, այսինքն գիտության ձեռք բերած տվյալների
օգտագործման ուղիների ուսումնասիրությունը և մատերիայի նոր հատկու-
թյունների պրակտիկ օգտագործումն արտադրության մեջ ապահովվում են հա-
մապատասխան կիրառական գիտությամբ ու տեխնիկայով: Հենց դրանք են
վերջին հաշվով գիտության հայտնագործությունները դարձնում արտադրու-
թյան հզոր ուժեր, նրա նոր տեսակներ:
Ճանաչելով ատոմի միջուկի գաղտնիքները, գիտությունը մարդուն հնա-
րավորություն է ընձեռել ստիպելու մատերիային դրսևորել իր կարևոր հատ-
կությունները և ստանալ էներգիայի նոր, վիթխարի աղբյուր, այն է՝ ջերմամի-
ջուկային էներգիա և շղթայական ռեակցիաների էներգիա: Այսպիսով, ծնունդ
է առել արտադրության մինչև այժմ չտեսնված նոր տիպ:
Սինթետիկ նոր նյութերի հանդես գալը՝ պոլիմերային քիմիայի զարգաց-
ման հիման վրա և դրանց կիրառումը հեղափոխեց արտադրության բոլոր բնա-
գավառները: Ներկայումս սինթետիկ, պոլիմերային բազում ու բազմազան
նյութերն այնպես են մտել կյանքի մեջ, որ արդի արդյունաբերությունը և կեն-
ցաղը դժվար է պատկերացնել առանց կաուչուկի, պլաստմասսայի, արհեստա-
կան մանրաթելի և այլ ու այլ սինթետիկ և պոլիմերային արտադրանքի:
Արդի քիմիան սկսում է ակտիվորեն ներգործել և փոփոխել արտադրու-
թյան նույնիսկ այնպիսի կայուն թվացող բնագավառներ, ինչպիսիք են՝ մետա-
լուրգիան, կամ ցեմենտի ու բետոնի արտադրությունը: Ֆիզիկայի զարգացման,
մասնավորապես պինդ մարմինների ֆիզիկայի զարգացման շնորհիվ ստեղծ-
վել են ավտոմատացման արտակարգ մեծ հնարավորություններ: Դրանց շնոր-
հիվ արմատական փոփոխություններ են տեղի ունենում ռադիոտեխնիկայի,



էլեկտրոնիկայի, էլեկտրատեխնիկայի բնագավառներում, որոնք, մաթեմատի-
կայի հաջողությունների հետ զուգորդված, հնարավորություն են տալիս ավելի
լայնորեն արմատավորելու ավտոմատացումը՝ որն այնքան անհրաժեշտ է մեր
ժողովրդական տնտեսության համար: ՍՄԿՊ XXII համագումարում Կենտկոմի
տված հաշվետու զեկուցման մեջ ընկ. Ն. Ս. Խրուշչովը հակիրճ և հստակ ձևա-
կերպել է արդի գիտության այդ ֆունկցիան: «Գիտությունը,— ասում է նա,—
գնալով ավելի է դառնում անմիջական արտադրողական ուժ, իսկ արտադրու-
թյունը՝ արդի գիտության տեխնոլոգիական կիրառում»:
Գիտության ու տեխնիկայի ներկայիս բուռն զարգացման պայմաններում,
երբ դրանց առջև ծառացել են պետական խիստ պատասխանատու խնդիրներ,
տեխնիկական քաղաքականության պրոբլեմները, հիրավի, առաջնակարգ նշա-
նակություն են ձեռք բերում: Ուստի միանգամայն ժամանակին էր ՍՄԿՊ
Կենտկոմի Նոյեմբերյան պլենումի որոշումը գիտության ու տեխնիկայի ղե-
կավարումն ուժեղացնելու, տեխնիկական քաղաքականության ղեկավարումը
կենտրոնացնելու, նյութական արտադրության բոլոր ոլորտներում միասնա-
կան տեխնիկական քաղաքականություն ապահովելու անհրաժեշտության մա-
սին: Այն թելադրված էր մեր հասարակարգի նյութական կյանքի զարգացման
հրամայական պահանջներով:
Եվ իրոք, հստակորեն ձևավորված կազմակերպական ձևը, գիտությունից
դեպի արտադրություն տանող ընդհանուր նպատակի բոլոր օղակների և տեխ-
նիկական առաջընթացի համագործակցությունը խիստ արդյունավետ է: Իսկ
այդ շղթայի ետ մնալը, ոչ հստակ որոշակի կազմակերպական ձևը, որևէ օղակի
ճեղքումը, բացասաբար են ազդում ժողովրդական տնտեսության այս կամ այն
ճյուղի տեխնիկական պոտենցիալի վրա, արգելակում նրա զարգացումը և
պատճառում վնասներ: Այդ տեսակետից կյանքը բազմաթիվ ուսանելի օրի-
նակներ է տալիս:

***

Գիտահետազոտական աշխատանքների, տեխնիկական առաջադիմության
ասպարեզում Հայկական ՍՍՌ-ում կատարվել է զգալի աշխատանք: Այն հնա-
րավորություն է տվել կազմակերպել արտադրության նոր տեսակներ, որոնք
մեծ չափով օգնում են արդյունաբերության աշխատանքի պայմանների բարե-
լավմանը, նպաստում արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը:
Ժողտնտխորհի անօրգանական քիմիայի ինստիտուտը հաջողությամբ լու-
ծել է նեֆելինային սիենիտների (որոնց պաշարները ռեսպուբլիկայում հսկա-
յական են) արդյունաբերական վերամշակման տեսական խնդիրը: Դրանց բա-
զայի վրա կառուցվում է Հրազդանի լեռնա-քիմիական կոմբինատը՝ երկրի խո-
շոր ձեռնարկություններից մեկը: Ինստիտուտի գիտական կոլեկտիվը հաջողու-
թյամբ լուծում է ժողովրդա-տնտեսական պրոբլեմների մի ամբողջ կոմպլեքս
և արտադրությանը ցույց է տալիս նոր ուղիներ:
Աչքի ընկնող հաջողություններ են ձեռք բերվել մեքենաշինության ու հաս-
տոցաշինության բնագավառում: Դրան մեծապես նպաստում են մեր գիտա-
հետազոտական հիմնարկների կոլեկտիվները: Ընթացիկ տարում ռեսպուբլի-
կայի գիտահետազոտական ինստիտուտներում ու կոնստրուկտորական բյու-
րոներում մշակվել են մեքենաների 25 նոր տեսակներ:

Ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության զարգացման մեջ վճռական և որոշիչ նշանակություն ունի ացետիլենը և նրանից ստացվող նյութերի քիմիան: Յոթնամյակի ընթացքում կթողարկվեն ավելի շատ սինթետիկ կաուչուկ, նաիրիտ, լատեքսներ, վինիֆլեքս, բուտիլոր և շատ այլ նյութեր, որոնց արտադրությունը հիմնված է ացետիլենի վրա: Այդ բոլոր ուղղություններով նշանակալի և օգտակար աշխատանք է կատարում գիտնականների, քիմիկոս-գիտական աշխատողների մի մեծ և բարձրորակ ջոկատ:

Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի օրգանական քիմիայի ինստիտուտը մշակել է քլորպոլիտրիենի սինթեզի նոր մեթոդ՝ սոսինձ ստանալու համար: Այն կարելի է հաջողությամբ և լայն մասշտաբներով կիրառել արտադրության մեջ մետաղի ու ռետինի միակցման համար: Ինստիտուտը հաջողությամբ մշակել է ացետիլենը՝ հեղուկաֆազ հիդրատացիայի միջոցով ացետալդեհիդի վերածելու մեթոդը, որն զգալիորեն պարզեցնում է տեխնոլոգիան, բացառում է որպես կատալիզատոր սնդիկի թունավոր աղերի կիրառումը:

Երևանի Պոլիտեխնիկ ինստիտուտի պրոբլեմային լաբորատորիայի մշակած տեխնոլոգիայով պոլիվինիլացետատ գործարանը պոլիվինիլացետատի ջրային դիսպերսիայից ստացել է վինիֆլեքս ձյութի առաջին փորձնական նմուշները և, դրա հիման վրա ՎԼ—7 լաքը, որն իբրև մեկուսիչ նյութ լայնորեն կկիրառվի էլեկտրատեխնիկական արդյունաբերության մեջ: Ընթացիկ տարվա առաջին կիսամյակում Հայաստանի արդյունաբերությունը կսկսի արտադրել մի շարք բուժիչ պրեպարատներ, որոնք մշակվել ու ստեղծվել են Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայի Նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտում:

ԷՄՀԳՀԻ-ի (ВНИИЭМ) Հայկական ֆիլիալը մշակել է արտաքին տեղակայման կոմպլեկտային տրանսֆորմատորային ենթակայաններ, որոնք օժտված են 160 կիլովատամպեր հզորությամբ յուղային տրանսֆորմատորներով՝ հոսանքի բազմաստիճան ավտոմատիկ կարգավորմամբ՝ ալյումինային փաթույթներով: Այդ ենթակայանների արտադրությունը կյուրացվի Հայէլեկտրագործարանում՝ 1963 թվականին: Այս տարի Երևանի ավտոբեռնիչ երիտասարդ գործարանը կթողարկի երկու տոննա բեռնատարողությամբ ինքնագնաց ունիվերսալ, եղանային ավտոբեռնիչների առաջին արդյունաբերական խումբը: Դրանք մշակվել են ավտոբեռնիչների Լվովի կոնստրուկտորական բյուրոյի կողմից, Երևանի ավտոբեռնիչ գործարանի գիտատեխնիկական աշխատողների կոլեկտիվի հետ միասին:

Նոր տեխնիկայի գծով կիրառված մի շարք կարևոր միջոցառումներ տնտեսական մեծ արդյունք են տվել ռեսպուբլիկայի արդյունաբերության գրեթե բոլոր ճյուղերում: Լուրջ աշխատանք է կատարվել լեռնահանքային արդյունաբերության մեջ: Գունավոր մետալուրգիայի ասպարեզում բաց եղանակով հանքահանման աշխատանքների տեսակարար կշիռը բարձրացել է 85 տոկոսի: Քաջարանի հանքում պղնձամոլիբդենային հանքատեսակների հանույթը բաց եղանակով կատարելու շնորհիվ աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է երեք անգամ, իսկ հանույթի ինքնարժեքն իջել է 2—3 անգամ: Մեծ մասշտաբներով արմատավորված են հարստացման նոր պրոգրեսիվ մեթոդներ, այն է՝ բազմամետաղ հանքերի կոլեկտիվ-սելեկտիվ ֆլոտացիա, գունավոր մետաղների հանքերի բազմաստադիական հարստացում: Այդ միջոցառման շնոր-



հիվ միայն 1962 թ. ընթացքում տնտեսվել է ավելի քան 400 հազար ռուբլի:

Տնտեսական մեծ արդյունք է ձեռք բերվել Արարատի ցեմենտի-շիֆերի կոմբինատում՝ թրծման պտտվող վառարանները կարծր վառելանյութից գազի փոխադրելու շնորհիվ: Այդ միջոցառման շնորհիվ ստացված տնտեսական արդյունքը կազմում է 672 հազար ռուբլի՝ ընդամենը 120 հազար ռուբլի ծախսերի դեպքում: Սպիտակի շաքարի գործարանում բեռնման-բեռնաթափման աշխատանքների կոմպլեքսային մեքենայացումը հնարավորություն է տվել տնտեսելու 40 հազար ռուբլի: Մշակված և Երևանի մսի կոմբինատում արդեն արմատավորված է միս աղալու արագացված մեթոդը, որը կտա 112 հազար ռուբլու տնտեսում:

Ուշադրավ են նոր տեխնիկայի արմատավորման աշխատանքները ռեսպուբլիկայի մեքենաշինական արդյունաբերության մեջ: 1959 թվականից հետո մեքենաշինական ձեռնարկություններում կառուցված են 69 հոսքային գծեր, քայլող կոնվեյերներ և իրականացված են այլ միջոցառումներ: Վերջին տարիների ընթացքում մեր մեքենաշինական գործարանները յուրացրել են նոր, ժամանակակից տիպի հաստոցների ու սարքավորման թողարկումը:

Սակայն, դժբախտաբար, տնտեսապես օգտակար մեծ աշխատանքների հետ զուգընթաց ռեսպուբլիկայի գիտահետազոտական հաստատությունների գործունեության մեջ զգալի թերություններ կան: Երբեմն ժողովրդատնտեսական մեծ նշանակություն ունեցող գիտահետազոտական կարևորագույն աշխատանքները, գիտության ու տեխնիկայի նվաճումներն արտադրության մեջ արմատավորելու միջոցառումներն անհիմն կերպով կասեցվում են երկար ժամանակով, երբեմն էլ վիժեցվում, ինչը լուրջ վնաս է պատճառում արդյունաբերությանը:

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի ավտոմատացման և մեքենաշինության Պետական կոմիտեի Ավտոմատիկայի գիտահետազոտական ինստիտուտը, Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի «Հայգունմետնախագիծ» ինստիտուտն Ալավերդու պղնձի-քիմիական կոմբինատի հետ միասին դեռևս 1959 թվականից սկսած ուսումնասիրում են պղնձե շտեյններ ստանալու արտադրական պրոցեսների կոմպլեքսային ավտոմատացման հարցերը: Սակայն փորձնական ցեխի շինարարական-մոնտաժային աշխատանքները չավարտելու հետևանքով այդ հետազոտությունները մինչև հիմա էլ չեն սկսվել: Մինչդեռ այդ միջոցառումը հնարավորություն կտա սարքավորման արտադրողականությունը բարձրացնել 12—15 տոկոսով, աշխատանքի արտադրողականությունը՝ 2—2,5 անգամ, ինչպես նաև նվազեցնել վառելիքի ծախսումը 10—12 տոկոսով, պակասեցնել պղնձի կորուստները պղնձախարամներում և այլն: Այդ նույն կոմբինատում խարամներից սելեն և թելուր ստանալու սխեմայի արմատավորումը նախնական տվյալներով կարող է տալ մոտավորապես 240 հազար ռուբլու տնտեսում: Սակայն այդ սխեման դեռ արմատավորված չէ արտադրության մեջ:

Երեք տարի շարունակ սիստեմատիկաբար վիժեցվում են Ձեթ-օճառ կոմբինատի էքստրակցիայի ցեխի շահագործման հանձնելու ժամկետները, որի հետևանքով էլ արդյունաբերությունն այդ ժամանակամիջոցում զրկվել է 2—5 միլիոն ռուբլի լրացուցիչ եկամուտներից: Ջերմուկի հանքային ջրերի գործարանում մի ամբողջ տարի չէր կատարվում ավտոմատիկ լիցքային երկու գծերի մոնտաժը: Դրա հետևանքով ռեսպուբլիկան զրկվել է մեկ միլիոն ռուբլու տնտեսումից:

Հացի գործարաններում ալյուրի ոչ տարայի պահպանումն ու փոխա-
դրումը կազմակերպելու միջոցառումն արդեն չորս տարվա պատմություն ունի։
1961 թվականին Մինիստրների Սովետը Երևանի հացի գործարանին պարտա-
վորեցրել էր կառուցել հարմարանք՝ ալյուրի պահպանման համար։ Սակայն
վերջացավ և 1962 թվականը, իսկ այդ միջոցառումը չի կատարված, մինչդեռ
դրա շնորհիվ կտնտեսվեր 100 հազար ռուբլի։

Հանրահայտ է, թե ռեսպուբլիկայի և ամբողջ երկրի համար որքան կա-
րևոր նշանակություն ունի տուֆի արդյունահանման մեքենայացումը։ Սակայն
հանրահայտ է նաև այն, որ այդ գործը լիովին չի իրականացվել՝ քարահատ
մեքենաներ չլինելու պատճառով։ Երեք տարի է անցել, իսկ այդ կարևոր մե-
քենաների թողարկումը դեռևս չի կազմակերպվել։

Ամենքին հայտնի է ռադիոակտիվ իզոտոպների կիրառման նշանակու-
թյունը և տնտեսական մեծ դերն արդյունաբերության մեջ։ Բայց ժողտնտխոր-
հը, խիստ անհասկանալի պատճառներով, ինչպես հարկն է չի կազմակերպում
այդ չափազանց օգտակար գործը և սիստեմատիկաբար չի կատարում արդյու-
նաբերության մեջ ռադիոակտիվ իզոտոպների օգտագործման պլանով նախա-
տեսված միջոցառումները։

Տեխնիկական առաջադիմությունը նախատեսում է նաև վերացնել ձեռքի
ծանր ու սակավ արտադրողական աշխատանքը՝ այն մեքենայացնելու միջոցով։
Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի որոշմամբ ռեսպուբլիկայի ժողտնտ-
խորհը պետք է կոմպլեքսային միջոցառումներ մշակեր արդյունաբերության
բոլոր ճյուղերում ձեռքի ծանր աշխատանքը մեքենայացնելու ուղղությամբ,
այն հաշվով, որ դրանք ավարտվեն 1965 թվականին։ Սակայն այդ որոշման
կատարումն, ըստ էության, վիժեցվել է։ Պլանի մեջ նախատեսվել են սոսկ
առանձին, մեկուսացված միջոցառումներ։ Տարեցտարի տապալվում են ժողո-
վըրդական տնտեսության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների արմա-
տավորման պետական պլանները։ Անցած 5 տարում այդ պլանները կատար-
վել են ընդամենը 75—80 տոկոսով։

Պատճառը հասուցելով մեր տեխնիկական առաջադիմությանը, միևնույն
ժամանակ պարտավոր ենք, ինչպես այդ նշում է ՍՄԿՊ Կենտկոմի Նոյեմբեր-
յան պլենումը, ամենալուրջ ուշադրությունը նվիրել այն բոլոր պատճառների
վերացմանը, որոնք խանգարում են ժողովրդական տնտեսության մեջ գիտու-
թյան ու տեխնիկայի նվաճումների լրիվ օգտագործմանը, անհրաժեշտ կազմա-
կերպական ու տեխնիկական պայմաններ ստեղծել ռեսպուբլիկայի հետագա
տեխնիկական առաջադիմության համար։

Նոր տեխնիկայի արմատավորման պլանների սիստեմատիկ վիժեցման
հիմնական ու գլխավոր պատճառներից մեկն այն է, որ դրա նկատմամբ այն-
պիսի պատասխանատվություն չի սահմանված, ինչպիսին կա համախառն ար-
տադրանքի, աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրան-
քի ինքնարժեքի իջեցման և ձեռնարկությունների ու ամբողջ արդյունաբերու-
թյան աշխատանքի մյուս քանակական ու որակական ցուցանիշների կատար-
ման հարցերում։

Այդ մասին է վկայում այն փաստը, որ եթե նոր տեխնիկայի առանձին
միջոցառումներ չեն կատարվել, այսպես կոչված «օբյեկտիվ» պատճառներով
(սարքավորումը և նյութերը ժամանակին չմատակարարելը, նախագծային-
տեխնիկական դոկումենտացիա չլինելը և այլն), ապա անցած տարվա ըն-



թացքում չկատարված բոլոր միջոցառումների մոտ 60 տոկոսը կազմում են
նրանք, որոնք լիովին ապահովված են եղել անհրաժեշտ ամեն ինչով և չեն
կատարվել միայն հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարների մեղքով։ Որոշ
ղեկավարներ հոգ չեն տանում ձեռնարկության աշխատանքը նյութական-տեխ-
նիկական ռեսուրսներով ապահովելու մասին, այդ ռեսուրսներն օգտագործելով
այլ նպատակների համար, դրանով իսկ ստեղծելով արդարանալու «օբյեկտիվ»
պատճառներ։ Ռեսպուբլիկայի արդյունաբերության տեխնիկական առաջադի-
մության կենսական հարցերի լուծման բնագավառում եղած խոշոր թերություն-
ների ամենագլխավոր պատճառը, ինչպես նշված է ընկ. Ն. Ս. Խրուշչովի զե-
կուցման մեջ, միասնական և հստակ տեխնիկական քաղաքականության բացա-
կայությունն է։

Մինչև օրս էլ չի կազմված նոր տեխնիկայի պլանավորման մի կուռ սիստեմ՝
ճյուղային գիտա-հետազոտական ինստիտուտների ավարտուն աշխատանքնե-
րի հիման վրա. նոր տեխնիկայի պլանավորումը չի դարձել ժողովրդական տըն-
տեսության զարգացման պլանի անբաժանելի մասը։ Այդ իսկ պատճառով
պլանից դուրս են մնացել տեխնիկական առաջադիմության կարևոր միջոցա-
ռումները, իսկ եթե դրանցից մի քանիսն էլ մտցվել են պլանի մեջ, ապա չեն
ապահովվել անհրաժեշտ միջոցներով՝ որպեսզի իրագործվեն։

Ռեսպուբլիկայում նոր տեխնիկայի արմատավորման պլանի նշանակալի
մասը կազմվում է ՍՍՌՄ Մինիստրների Սովետի արդյունաբերության ճյուղերի
Պետական կոմիտեների հանձնարարականներով։ Բայց այդ հանձնարարա-
կանները հաճախ համաձայնեցված չեն լինում համապատասխան շահագրգըռ-
ված կազմակերպությունների ու գերատեսչությունների հետ՝ ֆինանսական,
նյութատեխնիկական ապահովման, նոր արտադրանքի վաճառահանման, գի-
տատեխնիկական դոկումենտացիայի մատակարարման և այլ առումներով։ Հա-
ճախ նախատեսվում է նոր տեխնիկայի գծով արտադրանքը թողարկել ավելի
վաղ ժամկետներում, քան ձեռնարկությունն ստանում է տեխնիկական դոկու-
մենտացիա և համապատասխան սարքավորում։ Այս ամենի հետևանքով ճյու-
ղային կոմիտեները, հանձնարարելով նոր տեխնիկայի արմատական միջոցա-
ռումներ, հետագայում հնարավորություն չեն ունենում ներգործելու պլաննե-
րի կատարման վրա։

Տնտեսական շինարարության կառավարման կատարելագործման գլխավոր
անհետաձգելի խնդիրներից է միասնական տեխնիկական քաղաքականության
կիրառումը, որի համար անհրաժեշտ է ապահովել ճյուղային գիտահետազո-
տական հաստատությունների գործունեության անմիջական կապն արդյունա-
բերության հետ, ռեսպուբլիկայի համապատասխան պետական տնտեսական
օրգանների և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի արդյունաբերության առանձին
ճյուղերի Պետական կոմիտեների հետ, մշակել և իրականացնել միջոցառում-
ներ, որոնք կբարձրացնեն ժողտնտխորհի, նրա վարչությունների և ձեռնար-
կությունների, բոլոր մինիստրությունների ու գերատեսչությունների ղեկավար-
ների պատասխանատվությունը նոր տեխնիկայի արմատավորման պլանների
կատարման համար, բարձրացնել այդ պլանը կատարողների նյութական շա-
հագրգռվածությունը։

Ռեսպուբլիկայում գնալով ընդլայնվում է գիտահետազոտական աշխա-
տանքների ոլորտը։ Անհրաժեշտ է շարունակել գիտական հետազոտություննե-
րի կոորդինացման և հեռանկարային ու ընթացիկ պլանավորման արմատա-

կան բարելավումը, ընդլայնել հետազոտությունները բնական և տեխնիկական
գիտությունների բնագավառում, մշակել ժողովրդատնտեսական կարևոր նշա-
նակություն ունեցող գիտա-տեխնիկական կոմպլեքսային պրոբլեմներ, արա-
գացնել գիտական հետազոտությունների կատարման և դրանց արդյունքները ժո-
ղովրդական տնտեսության մեջ արմատավորելու անընդհատությունը: Պետք է
վերացնել գիտական հաստատությունների ավելորդ զուգահեռականությունը,
բազմաքանակ կամ մանր թեմաների հետևից ընկնելը, ավելի խելացի ու նպա-
տակասլաց օգտագործել այն դրամական ու նյութական միջոցները, որ պե-
տությունը հատկացնում է գիտության զարգացմանը: Այս գործում կարևոր
նշանակություն ունի նաև գիտական կադրերի պատրաստումը:

Սովետական Միության էկոնոմիկայի հետագա հզոր զարգացման և տըն-
տեսական շինարարության կառավարումը կատարելագործելու նպատակով
անհրաժեշտ է ավելի խորը թափանցել ռեսպուբլիկայի գիտահետազոտական
հաստատությունների գործունեության և կազմակերպման սիստեմի մեջ, ավե-
լի բարենպաստ պայմաններ ստեղծել գիտության ու արտադրության փոխա-
դարձ կապի ամրապնդման համար, այդ հաստատությունների հնարավորու-
թյուններն ամբողջովին ծառայեցնել գիտության ու ժողովրդական տնտեսու-
թյան զարգացմանը: Այս կապակցությամբ անհրաժեշտ է ճշգրիտ որոշել գի-
տական հաստատությունների գործունեության սահմանները: ՍՄԿԿ Կենտկոմի
Նոյեմբերյան պլենումի որոշումները հրամայաբար պահանջում են կոորդի-
նացնել և պլանավորել գիտական ու գիտահետազոտական հաստատություն-
ների գործունեությունն այն գիտատեխնիկական և տնտեսական պրոբլեմներն
ուսումնասիրելու և մշակելու ուղղությամբ, որոնք կարևոր են մի շարք միու-
թենական ռեսպուբլիկաների համար: Այդ են թելադրում ինչպես ամբողջ երկրի
ժողովրդական տնտեսության, այնպես էլ յուրաքանչյուր առանձին ռեսպուբ-
լիկայի հետագա զարգացման շահերը:

Անդրկովկասյան ռեսպուբլիկաների գիտահետազոտական հաստատու-
թյունները մշակում են գիտական հարցեր, որոնք կարևոր են երեք ռեսպուբ-
լիկաների համար: Անհրաժեշտ փոխադարձ ինֆորմացիայի և աշխատանքի
կոորդինացման բացակայության հետևանքով հաճախ տեղի է ունենում գիտա-
կան աշխատանքների կրկնություն, ավելանում են ընդհանուր ծախսերը, պա-
կաս արդյունավետ դառնալով երեք ռեսպուբլիկաների համար: Հասունացել է
Անդրկովկասում գիտության ու տեխնիկայի մի շարք հիմնական առաջատար
ուղղությունների գծով գիտահետազոտական հաստատությունների գործունեու-
թյան կոորդինացման և պլանավորման հարցը՝ հատկապես էներգետիկայի ու
էլեկտրիֆիկացման, օգտակար հանածոների երկրաբանական հետախուզու-
թյունների, ջրային ռեսուրսների կոմպլեքսային օգտագործման, գյուղատըն-
տեսության քիմիականացման և այլ կարևոր բնագավառներում:

ՍՄԿԿ Կենտկոմի Նոյեմբերյան պլենումի որոշումները մատնանշում են
գիտահետազոտական և նախագծային-կոնստրուկտորական կազմակերպու-
թյունների ղեկավարումը վերակառուցելու, միասնական տեխնիկական քաղա-
քականություն վարելու ճիշտ ուղիները: Այդ որոշումների իրականացումը գոր-
ծունեության ավելի լայն ասպարեզ կբացի գիտական աշխատողների, գիտնա-
կանների, ժողովրդական տնտեսության բոլոր աշխատողների՝ կոմունիզմի
կառուցման մեծ ծրագիրը կենսագործողների առջև:

---

# ԱՐԵՎՄՏՅԱՆ ԵՎՐՈՊԱՅԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ «ԻՆՏԵԳՐԱՑԻԱՆ»

Վ. ԳԱԲՈՒՉՅԱՆ

Եվրոպայի «ինտեգրացիայի» շուրջը բարձրացած աղմուկը վերաբերում է
վերջին տարիներին արևմտաեվրոպական մի խումբ երկրների տնտեսական,
քաղաքական և ռազմական միավորման ինտենսիվ տենդենցներին:

Հայտնի է, որ միավորվելու ձգտումը հատուկ է առհասարակ մոնոպոլիս-
տական կապիտալիզմին. արտադրության համակենտրոնացումը և մոնոպոլիա-
ների առաջացումը, մոնոպոլիաների դուրս գալը առանձին տերությունների
սահմաններից և նրանց վերածումը «գերմոնոպոլիաների», միջազգային մոնո-
պոլիաների առաջացումը ոչ այլ ինչ են, եթե ոչ կապիտալիստական միավոր-
ման ձևեր և տարբեր աստիճաններ, որոնք աշխատանքի հասարակական ու մի-
ջազգային բաժանման խորացման, արտադրության հասարակական բնույթի
ուժեղացման անխուսափելի հետևանք են: Դրանով է բացատրվում այն հան-
գամանքը, որ կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի ծավալմամբ ավելի աչ-
խուժացան միավորման երևույթները, զգալի դարձավ «համաշխարհային միաս-
նական տնտեսություն» ստեղծելու ձգտումը:

Սակայն կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի ժամանակակից էտապում
արևմտաեվրոպական բուրժուազիային անհրաժեշտ էին պետական-մոնոպո-
լիստական միավորումների նոր, ավելի ուժեղ և ավելի ագրեսիվ տիպեր: Հենց
դրանով է բացատրվում այն, որ ինտեգրացիոն օրինաչափությունների իրենց
տարբերիչ հատկանիշներով բացահայտորեն դրսևորվեցին միայն 50-ական
թվականների երկրորդ կեսին, կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի երրորդ
էտապում և առաջին անգամ շոշափելի մարմնավորում ստացան, այսպես կոչ-
ված՝ «ընդհանուր շուկայի» կազմակերպչական ձևի մեջ: Սա, իհարկե, չի նշա-
նակում, թե «ինտեգրացիան» սկսվում և սպառվում է «ընդհանուր շուկայով»:
Վերջինս «ինտեգրացիայի» բովանդակության լիակատար դրսևորումն է, որի
ստեղծումը նախապատրաստվել էր կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի ամ-
բողջ ընթացքով, իսկ անմիջականորեն՝ երկրորդ համաշխարհային պատերազ-
մից հետո: Եվ պատահական չէ, որ հենց այդ շրջանում լայնորեն տարածվեց
տնտեսական «ինտեգրացիայի» գաղափարը կապիտալիստական աշխարհում:

Համառոտակի խոսենք երկրորդ համաշխարհային պատերազմից հետո,
մինչև «ընդհանուր շուկայի» ստեղծումը, Արևմտյան Եվրոպայի երկրների հա-
մաշխարհային էկոնոմիկայում տեղի ունեցած այն միջազգային խմբումների
մասին, որոնք «ինտեգրացիայի» նախադուռը հանդիսացան: Դրանով միաժա-
մանակ կպատասխանենք այն հարցին, թե ինչ՞ւ «ինտեգրացիան», որը հետ-
պատերազմյան կապիտալիստական համաշխարհային էկոնոմիկայում ամե-

նախոշոր տնտեսական տեղաշարժն է, տեղի ունեցավ Եվրոպայում և ոչ թե մի այլ տեղ։

1950-ական թվականների սկզբներից սկսած արագորեն վերականգնվեց Եվրոպայի կապիտալիստական երկրների, հատկապես երկրորդ համաշխարհային պատերազմում պարտված պետությունների տնտեսական պոտենցիալը։ Արդյունաբերական համաշխարհային արտադրանքի և միջազգային առևտրի մեջ բարձրացավ կապիտալիստական Եվրոպայի տեսակարար կշիռը՝ ի հաշիվ ԱՄՆ-ի, մի հանգամանք, որը պայմանավորեց ԱՄՆ-ի տնտեսական էքսպանսիայի ուժեղացումը։ Խիստ սրվեցին հակասությունները կապիտալիստական աշխարհում և, ամենից առաջ, Եվրոպայում, որտեղ տնտեսական ու աշխարհագրական համեմատաբար նեղ սահմաններում բնապատմական գործոնների հետևանքով կենտրոնացած են կապիտալիստական զարգացած շատ երկրներ։ Իմպերիալիզմի գաղութային սիստեմի փլուզումը և, վերջապես, տնտեսության համաշխարհային սոցիալիստական սիստեմի կազմակերպումը ավելի սրեցին կապիտալիզմի հակասությունները։ Այս պայմաններում բնական է, որ կապիտալիստական աշխարհում պետք է ուժեղանար «միավորվելու» ձգտումը։ Եվ ահա մեկը մյուսի հետևից երևան եկան զանազան համաձայնագրեր ու բլոկներ։ Վաճառահանման, կապիտալի ներդրման նոր ուղիների, իրենց որոնումների մեջ մոնոպոլիաները մրցակցային դաժան պայքարում դուրս են գալիս արտադրության ազգային սահմաններից և միաձուլվում։ Պրոլետարիատի շահագործման ավելի շահավետ ու անողոք մեթոդների կիրառման և կապիտալի ներդրման ոլորտների շուրջը տեղի ունեցող բանակցություններում մոնոպոլիաների շահերը ժամանակավորապես համընկնում են և օբյեկտիվ հնարավորություններ են ստեղծվում մոնոպոլիստական ինտերնացիոնալ միությունների կազմավորման նպատակով տարբեր երկրների մոնոպոլիաների միջև համաձայնությունների հասնելու համար։

Արդեն 1947 թվականին կազմակերպվեց «Գլխավոր համաձայնություն առևտրի և տարիֆների մասին» (ԳՀԱՏ), որում ընդգրկված պետությունները պայմանավորվեցին երկկողմանի բանակցությունների միջոցով անփոփոխ պահել, իջեցնել, կամ վերացնել մաքսային տարիֆները որոշ ապրանքների փոխադարձ առևտրում։ ԳՀԱՏ-ը փաստորեն ոչ մի միավորում չստեղծեց, քանի որ նրա հիմքում ընկած էր միայն երկկողմանի բանակցությունների հնարավորությունը։

1947 թվականին ուժի մեջ մտավ նաև Բենիլյուքսի համաձայնագիրը՝ Բելգիայի, Հոլանդիայի և Լյուքսեմբուրգի առևտրական հարաբերություններում մաքսային տարիֆների հավասարեցման մասին։ 1948 թվականին, Բրյուսելի համաձայնագրի հիման վրա ստեղծվեց ռազմա-քաղաքական «Արևմտյան բլոկը», որի մեջ Անգլիայի և Ֆրանսիայի հետ միասին մտան նաև Բենիլյուքսի երկրները։ Մեկ տարի անց «Արևմտյան բլոկը» դարձավ նոր կազմակերպվող Հյուսիս-ատլանտյան ագրեսիվ պայմանագրի (ՆԱՏՕ) օղակներից մեկը։

Եվրոպան «միավորելու» իմպերիալիստական պլանների իրականացման մեջ իր կարևոր տեղն ունի 16 երկրների (հետագայում՝ 18) մասնակցությամբ «Եվրոպական տնտեսական համագործակցության կազմակերպության» (ԵՏՀԿ) ստեղծումը 1948 թվականին։ Չնայած ԵՏՀԿ-ի պայմանագրով նախատեսված էր թույլ տալ մասնակից երկրների միջև ապրանքների, կապիտալի և աշխատուժի ազատ տեղաշարժեր կատարել, սակայն այդ բոլորովին չէր ապահովվում հենց



այն պարզ պատճառով, որ ընդհանուր խոսքերից բացի մշակված և համաձայնեցված նորմաներ չկային. ամեն մի միջոցառում իրականացնելու համար հարկ էր լինում ամեն անգամ նոր բանակցություններ վարել։

1950 թվականին ստեղծվեց «Եվրոպական վճարումների միությունը», որը սոսկ վալյուտային համաձայնություն էր՝ հիմնված բազմակողմանի քլիրինգի վրա և որը 1959 թվականին դադարեց գործելուց՝ գերարտադրության տնտեսական ճգնաժամի պայմաններում վալյուտային դժվարությունների ու հակասությունների խորացման հետևանքով։

Եվրոպան «միավորելու» մի քանի անհաջող փորձերից հետո ծագեց տնտեսության առանձին ճյուղերն «ինտեգրացնելու» գաղափարը. 6 երկրների՝ Ֆրանսիայի, ԳՖՌ-ի, Իտալիայի, Բելգիայի, Հոլանդիայի և Լյուքսեմբուրգի մասնակցությամբ 1953 թվականին կազմակերպվեց «Ածխի և պողպատի եվրոպական միավորումը» (ԱՊԵՄ)։

Եվրոպայի «միավորման» նոր էտապն սկսվեց 1955 թվականից, երբ ԱՊԵՄ-ի մասնակից 6 երկրների Մեսինայում կայացած կոնֆերանսը որոշում ընդունեց «Եվրոպական տնտեսական համագործակցություն» (ԵՏՀ), կամ՝ «ընդհանուր շուկա» ստեղծելու համար պայմանագրեր նախապատրաստելու մասին։ ԱՊԵՄ-ի կազմավորումը եվրոպական մոնոպոլիստական բուրժուազիան դիտում էր որպես «ինտեգրացիայի» առաջին էտապ։ Շումանի պլանը (ԱՊԵՄ) և Սպաակի պլանը (ԵՏՀ) հանդիսացան Եվրոպայի «ինտեգրացիայի» ընդհանուր ծրագրի երկու հարակից գլուխները։

1957 թվականի մարտի 25-ին արևմտաեվրոպական վեց պետությունների ղեկավարները Հռոմում պայմանագիր ստորագրեցին «Եվրոպական տնտեսական համագործակցություն («ընդհանուր շուկա», «Վեցյակ», կամ՝ «Փոքր Եվրոպա») ստեղծելու մասին։

ԵՏՀ-ի ընդհանուր վերահսկողությունը իրականացնում է Ասամբլեան, կամ «եվրոպական պառլամենտը», որում Ֆրանսիան, Իտալիան և ԳՖՌ-ն ունեն 36-ական ներկայացուցիչ, Բելգիան և Հոլանդիան՝ 14-ական, իսկ Լյուքսեմբուրգը՝ 6։

Վեց երկրների տնտեսական քաղաքականությունը կոորդինացնելու համար ԵՏՀ-ի սիստեմում ստեղծվեց մի խորհուրդ, որը միաժամանակ հաստատում է Համագործակցության բյուջեն։ Խորհրդում որոշումների ընդունման ժամանակ Ֆրանսիան, ԳՖՌ-ն և Իտալիան ունեն 4-ական ձայն, Բելգիան և Հոլանդիան՝ 2-ական, իսկ Լյուքսեմբուրգը՝ 1։

ԵՏՀ-ում ամենամեծ իրավասություններ ունեցող նրա գլխավոր գործադիր օրգանն է՝ Հանձնաժողովը, որն առաջարկություններ է ներկայացնում Համագործակցության միասնական քաղաքականությունը մշակելու համար։ Հանձնաժողովը, որի ապարատը բաղկացած է 2000 մարդուց, վերահսկում է ԵՏՀ-ի բոլոր պայմանագրերի կատարմանը, կոնկրետ հանձնարարականներ ու որոշումներ է ընդունում, որոնք պարտադիր են ոչ միայն 6 պետությունների, այլև դրանց առանձին ընկերությունների ու քաղաքացիների համար։ Հանձնաժողովը մշակում է միասնական մաքսային տարիֆներ երրորդ երկրների հետ կատարվող առևտրի համար և լուծում է ԵՏՀ-ի մեջ չմտնող երկրների հետ կապված բոլոր հարցերը։ Հանձնաժողովի ստեղծումից մինչև այսօր նրա նախագահն է արևմտագերմանական պրոֆեսոր Վալտեր Հալշտեյնը։ Պատասխանելով այն հարցին, թե նա ինչպե՞ս է պատկերացնում «եվրոպական ինտեգրացիան»՝

Հայտնեյնը հայտարարել է. «մայրցամաքի բոլոր մասերի՝ մինչև Ուրալի միավորումը...»:

ԵՏՀ-ի մյուս օրգաններն են՝ Դատարանը (արբիտրաժ, որը քննարկում է մասնակից երկրների բողոքները), Տնտեսական և սոցիալական կոմիտեն (կոնսուլտատիվ օրգան՝ Խորհրդին, Հանձնաժողովին և Եվրատոմին կից), Վալյուտային կոմիտեն (կոորդինացնում է մասնակից երկրների վալյուտային քաղաքականությունը): ԵՏՀ-ի տարբեր միջոցառումները ֆինանսավորելու նպատակով ստեղծված են վարկային հաստատություններ՝ Եվրոպական ինվեստիցիոն բանկ, Անդրծովյա տերիտորիաների զարգացման ֆոնդ, Եվրոպայի սոցիալական ֆոնդ, իսկ այժմ կազմակերպվում է նաև Եվրոպական ագրարային ֆոնդ:

Ինչպես հեշտ է նկատել, «ընդհանուր շուկայի» մեխանիզմի մասին տրված համառոտ բնութագրումից, Եվրոպայի «ինտեգրացիան» կապիտալիստական էկոնոմիկայի և քաղաքականության վրա մոնոպոլիաների տիրապետության ուժեղացման սխեմ է, պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի վերաճումը միջպետական-մոնոպոլիստական կապիտալիզմի: «Ընդհանուր շուկան» Արևմտյան Եվրոպայի փոքր պետություններին ճնշելու միջոց է: «Միավորված» երկրի ամբողջ կյանքը սկսում է ենթարկվել ոչ թե «ազգային» պետական-մոնոպոլիստական կապիտալին, այլ «վերազգային», «վերպետական» օրգաններին: Տվյալ դեպքում մենք գործ ունենք ոչ թե մոնոպոլիստական համաձայնությունների, ոչ թե միջազգային մոնոպոլիստական սովորական միավորումների, այլ պետությունների միջև կնքվող պայմանագրերի հետ: «Ընդհանուր շուկան» թե՛ ձևով, թե՛ բովանդակությամբ տարբերվում է տրեստների և կարտելների միջազգային մոնոպոլիստական կազմակերպություններից: Ի տարբերություն վերջինների, ԵՏՀ-ի ստեղծման համար պահանջվեց պետությունների պառլամենտների որոշումը և մասնակից երկրների կոնստիտուցիաների փոփոխություններ: ԵՏՀ-ն վերահսկում է 6 երկրների էկոնոմիկայի բոլոր ճյուղերը, այդ թվում արդյունաբերությունը, տրանսպորտը, գյուղատնտեսությունը: Եվ ի տարբերություն միջազգային մոնոպոլիստական սովորական միությունների, որոնց գործունեությունն ընդգրկում է ավելի սահմանափակ հարցեր, «ընդհանուր շուկան» միջպետական պայմանագիր է ո՛չ միայն տնտեսական բազմակողմանի հարցերի, այլև քաղաքական ու ռազմական պրոբլեմների շուրջ և հեռուն գնացող նպատակներ է հետապնդում:

«Ընդհանուր շուկան» մաքսային տարիֆների և ներմուծումների քանակական սահմանափակումների լիկվիդացման մեխանիզմ է: Այն հարվածում է աշխատավորների շահերին, քանի որ նախատեսում է մասնակից երկրներում հավասարեցնել աշխատավարձերը, մի բան, որը, բնականաբար, կկատարվի ոչ թե ցածրը բարձրին հավասարեցնելու ուղղությամբ, այլ ընդհակառակը: ԵՏՀ-ին անմիջականորեն հարում են «Եվրաֆրիկան» (տնտեսապես հետամնաց երկրները «ընդհանուր շուկայում» ոչ-իրավահավասար պայմաններով ընդգրկելու նեոգաղութարարական պլան) և «Եվրատոմը» (եվրոպական ատոմային կազմակերպություն, որի խնդիրն է խթանել ատոմային արդյունաբերության զարգացմանը և այդ նպատակով ստեղծել վեց երկրների ֆինանսական ընդհանուր ֆոնդ):

«Ընդհանուր շուկան» մի խմբավորում է, որը նրանում չընդգրկված երկրների նկատմամբ վարում է ավտարկիայի քաղաքականություն: Խմբավորման ներսում ազատ առևտրի, իսկ նրանից դուրս պրոտեկցիոնիզմի նման զուգորդումը «ընդհանուր շուկայի» մասնակից երկրներին դնում է համեմատաբար արտոնյալ վիճակում: Վեց երկրների ապրանքների գները «ընդհանուր շուկայում» նվազում են՝ երրորդ պետություններից ներմուծվող նույն ապրանքների գների համեմատությամբ:

Արևմտյան Եվրոպայի երկրները կազմում են տնտեսության համաշխարհային կապիտալիստական սիստեմի մի կարևոր օղակը: ԳՖՌ-ն, Իտալիան, Բելգիան, Ֆրանսիան, Հոլանդիան և Լյուքսեմբուրգը միասին վերցրած տալիս են կապիտալիստական համաշխարհային արդյունաբերական արտադրանքի 20 տոկոսը: Նրանք տնտեսական բազմակողմանի կապեր ունեն մյուս մայրցամաքների կապիտալիստական շատ երկրների հետ: Նրանց ներփակումը արևմտաեվրոպական «միավորման» մեջ և, հետևաբար, կապիտալիստական այլ երկրների հետ արտաքին տնտեսական հարաբերությունների արհեստական սահմանափակումը բնականաբար խորացնում են տնտեսական դժվարությունները կապիտալիստական համաշխարհային սիստեմում, ուժեղացնում կապիտալիզմի տնտեսական անհամաչափ զարգացումը և հարվածում «ընդհանուր շուկայի» մեջ մտնող, բայց նրա մասնակից երկրների հետ առևտրական հարաբերություններ ունեցող պետությունների շահերին: Բավական է նկատի ունենալ, որ կապիտալիստական աշխարհի ամբողջ արտաքին ապրանքաշրջանառության մեջ «Վեցյակի» բաժինը հասնում է 25 տոկոսի:

Հռոմի պայմանագիրը առաջին հերթին խիստ սրեց հակասությունները Անգլիայի և «ընդհանուր շուկայի» անդամ երկրների միջև: Անգլիայի համար տնտեսապես ձեռնտու չէր մասնակցել «ընդհանուր շուկային», որովհետև պայմանագիրը նախատեսում է մաքսային ընդհանուր տարիֆների սահմանում երրորդ երկրների նկատմամբ: Ազգերի բրիտանական համագործակցության սիստեմի ներսում անդամ երկրների արտաքին առևտրի մաքսային տարիֆները ցածր են և, հակառակը, սիստեմից դուրս կատարվող առևտրում՝ բավականին բարձր: Արդյունաբերական ապրանքների վրա սահմանված մաքսերը կազմում են միջին հաշվով ներմուծվող ապրանքների գների 20—25, իսկ որոշ ապրանքների, ինչպես, օրինակ, ավտոմեքենաների վրա՝ 30 և նույնիսկ 40 տոկոսը: Այլ կերպ ասած՝ բրիտանական համագործակցության ներսում Անգլիան օգտվում է կայսերական արտոնությունների սիստեմից: Իսկ «ընդհանուր շուկայում» ընդգրկվելը ենթադրում էր ո՛չ միայն ընդհանրապես մաքսային տարիֆների իջեցում, այլև ԵՏՀ-ի անդամ մյուս երկրների հետ առևտրական հարաբերություններում բոլոր մաքսերի և քանակական սահմանափակումների վերացում: Դրանով Անգլիայի ազդեցության ոլորտների դարպասները լայնորեն կբացվեին արտասահմանյան ապրանքների առջև, խախտելով Մեծ Բրիտանիայի դիրքերը:

Ստեղծված դժվարություններից դուրս գալու համար 1959 թվականի նոյեմբերի 20-ին, Անգլիայի նախաձեռնությամբ ստեղծվեց «Ազատ առևտրի եվրոպական ասոցիացիան» (ԱԱԵԱ, «Յոթնյակ», կամ՝ «Փոքր գոտի»), որի մեջ մտան 7 պետություններ՝ Անգլիան, Նորվեգիան, Շվեդիան, Պորտուգալիան, Ավստրիան, Շվեյցարիան և Դանիան: Այսպիսով, Արևմտյան Եվրոպան պառակտվեց իմպերիալիստական երկու խմբավորումների:

Հետագայում, արևմտաեվրոպական միջազգային երկու խմբավորումների մրցապայքարում իրադարձությունները զարգացան հօգուտ ԵՏՀ-ի: Անգլիական էկոնոմիկայի աճող դժվարությունները, ԱԱԵԱ-ի համաձայնագրերի ավելի

լիբերալ բնույթը, ԵՏՀ-ի տնտեսական ուժի գերազանցությունը, ԱՄՆ-ի կողմից Մեծ Բրիտանիայի վրա գործադրվող ճնշումը վերջինին ստիպեցին հրաժարվել իր դիրքերից։ 1960 թվականի վերջին Անգլիան սկսեց նահանջել «ընդհանուր շուկայի» հետ մերձեցման հարցում իր բացասական վերաբերմունքից և արդեն 1961 թվականի օգոստոսի 3-ին համայնքների պալատը որոշում ընդունեց միանալ «ընդհանուր շուկային»։ Ազգերի բրիտանական համագործակցության մի շարք երկրների կողմից այդ որոշումը գնահատվեց որպես դավաճանություն։ Բուն Անգլիայի ղեկավար շրջաններում սուր տարաձայնություններ կան այս հարցի շուրջը, սակայն Մակմիլանի կառավարությունը պաշտոնապես դիմեց ԵՏՀ-ի Հանձնաժողովին՝ Անգլիան որպես իրավահավասար անդամ ԵՏՀ-ում ընդունելու խնդրանքով։ Ինչպես հայտնի է, այդ հարցը տապալվեց Բրյուսելի խորհրդակցությունում Ֆրանսիայի ներկայացուցչի վետոյի հետևանքով։ Դժվար է ասել, թե անգլիական էկոնոմիկայի համար ո՞րն ավելի քայքայիչ կլիներ— մնալ Ազգերի բրիտանական համագործակցության դիրքերում և աստիճանաբար դուրս մղվել արևմտաեվրոպական շուկաներից, թե՞ մտնել ԵՏՀ-ի մեջ և հրաժարվել կայսերական արտոնություններից։ Մի բան պարզ է, որ Մակմիլանի կողմից վերջին վարիանտին առավելություն տալը պայմանավորված էր ռազմա-քաղաքական դրդապատճառներով, առաջին հերթին՝ սոցիալիզմի դեմ ուղղված ՆԱՏՕ-ն քայքայումից փրկելու ձգտումով։ Եվ, չնայած ԱԱԵԱ-ը դեռևս ձևականորեն գոյություն ունի, սակայն փաստորեն լիկվիդացվել է։ Որպես ԵՏՀ-ի իրավահավասար անդամներ ընդունվելու պաշտոնական խնդրանքով դիմել են նաև Դանիան, Նորվեգիան և Իռլանդիան, իսկ որպես ԵՏՀ-ի ասոցիացված անդամներ ընդունվելու խնդրանքով դիմել են՝ Շվեդիան, Շվեյցարիան, Ավստրիան, Թուրքիան և Իսպանիան [1]։

Այժմ Արևմտյան Եվրոպայի «ինտեգրացիան» թևակոխել է իր նոր փուլը. դա պայմանավորված է, մի կողմից՝ ԱԱԵԱ-ի պարտությամբ, մյուս կողմից՝ նրանով, որ 1962 թվականից սկսվեց «ընդհանուր շուկայի» կազմավորման միջոցառումների երկրորդ էտապը, որը պետք է ավարտվի 1966 թվականին։

Որո՞նք են առաջին էտապի արդյունքները։

Առ մեկը հուլիսի 1962 թվականի, 6 երկրների փոխադարձ առևտրում արդյունաբերական ապրանքների մաքսային տարիֆները նվազել էին 50, իսկ գյուղատնտեսական ապրանքներինը՝ 35 տոկոսով։ Լրիվ վերացել էին քանակական սահմանափակումները։ Հանձնաժողովը որոշում ընդունեց մաքսերն ամբողջովին վերացնել ոչ թե մինչև 1970 թվականը, ինչպես նախատեսված էր Հռոմի պայմանագրով, այլ 4 տարի շուտ՝ 1966 թվականին։ 1957-ից մինչև 1961 թվականը «ընդհանուր շուկայի» երկրների արդյունաբերական արտադրանքն աճեց 30, իսկ արտահանումների ծավալը՝ 50 տոկոսով։ Սակայն այս տեղաշարժերը ամենևին չի կարելի վերագրել «ընդհանուր շուկայի» «բարերար» ազդեցությանը։ Բանն այն է, որ համագործակցության մեջ ընդգրկվեցին այնպիսի երկրներ, որոնց էկոնոմիկան առանց «միավորվելու» էլ զարգանում էր արագ տեմպերով (ԳՖՌ, Ֆրանսիա, Իտալիա)։ Բացի դրանից, 1957—1958 թվականների գերարտադրության տնտեսական ճգնաժամից ու լճացումից հետո Արևմտյան Եվրոպայի էկոնոմիկան թևակոխեց աշխուժացման ու վերելքի փուլը։ Իհարկե, «ընդհանուր շուկայի» ունեցած ներգործությունը նույնպես չի կարելի ամբողջովին անտեսել, սակայն դա ժամանակավոր բում էր, ինչպես օճառի պղպջակը։ Ներկայումս արդեն նվազել են «վեցյակի» արդյունաբերական արտադրության աճի տեմպերը, ամենից ավելի դրանք նվազել են ԳՖՌ-ում և Ֆրանսիայում։ 1961 թվականի երկրորդ կեսից կրճատվեց պողպատի ձուլումը ԳՖՌ-ում և Բելգիայում, ավտոմեքենաների արտադրությունը Ֆրանսիայում, առևտրական նավերի արտադրությունը ԳՖՌ-ում։ Բելգիան, որն արդյունաբերական արտադրանքի աճի տեմպերով նախկինում առաջ էր անցնում այնպիսի երկրներից, ինչպիսիք են՝ ԱՄՆ-ը, Անգլիան, Կանադան և Շվեդիան, 1962 թվականի սկզբին կապիտալիստական աշխարհում գրավում է վերջին տեղերից մեկը՝ ԱՄՆ-ի հետ միասին։

Բացի այս բոլորից, ինչպես նշված է ՍՍՌՄ Գիտությունների Ակադեմիայի Համաշխարհային էկոնոմիկայի և միջազգային հարաբերությունների ինստիտուտի «Թեզիսներում», «մինչև այժմ իրականացվել է «ընդհանուր շուկայի» միջոցառումների այն մասը, որը կապված է համեմատաբար ոչ մեծ դժվարությունների հետ։ Այնուամենայնիվ, «ինտեգրացիայի» ծրագրի նույնիսկ այս առավել հեշտ մասի իրականացումը բախվեց սուր հակասությունների...։ Հին հակասություններին ավելացան նորերը։ Արևմտաեվրոպական 6 երկրների՝ պատմականորեն կազմավորված էկոնոմիկայի կառուցվածքը նրանց վերածեց արդյունաբերական միատեսակ արտադրանքի՝ ընդհանուր մեքենաշինության, քիմիական, էլեկտրատեխնիկական սարքավորման, ավտոմեքենաների, տեքստիլ արտադրանքի վաճառահանման բնական մրցակիցների։ ...Տեղի են ունենում կոնֆլիկտներ, որոնք առաջանում են մեկը մյուսի նկատմամբ գաղտնի և բացահայտ խտրական գործունեությունից, հատկապես «առևտրական պատերազմի» այնպիսի խաղերից, ինչպիսիք են՝ արտահանող ճյուղերին պետական սուբսիդիաներ տրամադրելը, որն արգելված է պայմանագրով, մրցակիցների համար տրանսպորտային անբարենպաստ պայմաններ ստեղծելը և այլն։ Ամենասուր հակասություններ կան գյուղատնտեսական արդյունքի գների մակարդակի, այդ արդյունքի ներմուծման քանակական սահմանափակումների հարցերում և այլն»։

Եվ իրոք, հենց գյուղատնտեսության հետ կապված հարցերում է, որ համագործակցության առաջ ծառանում են ամենաբարդ և ամենահակասական պրոբլեմներ, որոնք, ինչպես ցայտուն կերպով երևաց այս տարվա հունվար ամսին Բրյուսելում կայացած բանակցություններում, ամբողջ «ինտեգրացիան» կրախի ենթարկելու սպառնալիք են ստեղծում։ Հիշյալ բանակցությունների ժամանակ որոշում ընդունվեց 1962 թ. երկրորդ կեսին ստեղծել ագրարային ընդհանուր շուկա, որի հիմնական միջոցառումները պետք է ավարտվեն մինչև 1969 թվականի վերջը և որը պետք է ընդգրկի գյուղատնտեսական կարևորագույն արդյունքների նոմենկլատուրայի 90 տոկոսը։ Հենց խոր հակասություն-

[1] ԵՏՀ-ի կոնվենցիան նոր անդամներ ընդունելու երկու ձև է սահմանում. իրավահավասար և ասոցիացված։ Իրավահավասար անդամն ունի ձայնի իրավունք բոլոր հարցերի լուծման գործում, օգտվում է կոնվենցիայով նախատեսված բոլոր արտոնություններից և ստանձնում բոլոր պարտավորությունները, այդ թվում և պետական ինքնուրույնության ու անկախության սահմանափակումը։ Ասոցիացված անդամը (օրինակ՝ Հունաստանը, որն ընդունվեց 1961 թվականին) ենթարկվում է «ընդհանուր շուկայի» վերազգային օրգանների որոշումներին այդ բնագավառներում, ձայնի իրավունք ունի միայն տնտեսական և առևտրական հարցերի լուծման ժամանակ, պարտավոր է հրաժարվել իր ազգային մաքսային դրույքներից և երրորդ երկրների հետ արտաքին առևտրի հարաբերությունները կատարել «ընդհանուր շուկայի» համար սահմանված միասնական մաքսերով։

ների առկայությամբ է բացատրվում այն փաստը, որ գյուղատնտեսության վերաբերյալ պայմանագիրը ավելի ընդհանուր բնույթ ունի և շատ վերապահումներ է պարունակում:

ԵՏՀ-ը մի միջոց է, որպեսզի պետական կարգավորման օգնությամբ բարձրացվի գյուղատնտեսական կապիտալիստական ձեռնարկությունների եկամտաբերությունը և արտադրությունից դուրս մղվեն մանր ու միջակ տնտեսությունները: Ֆրանսիայի ղեկավար շրջանները նախատեսել են առաջիկա տարիներին լիկվիդացնել 800 հազար գյուղացիական տնտեսություններ: Արդեն վերջին հինգ տարիների ընթացքում Իտալիայում 500 հազար գյուղացիներ և բատրակներ հարկադրված են եղել թողնել գյուղատնտեսությունը: ԳՖՌ-ում գյուղատնտեսությունից տարեկան հեռանում է 100 հազար մարդ: Առաջիկայում այս պրոցեսը ավելի է ուժեղանալու. հայտնի է, որ գյուղատնտեսությունը «ընդհանուր շուկայի» տարբեր երկրներում, իր մասնագիտացվածությամբ, տեխնիկական հագեցվածությամբ, աշխատանքի արտադրողականությամբ, արտադրության ծախսերով խիստ տարբերվում է: Գյուղատնտեսական միասնական շուկայի ստեղծումը և դրա համար գյուղատնտեսական միասնական, նվազագույն գների սահմանումը այն ժամանակ, երբ արտադրության ծախսերի տարբերությունները տատանվում են 50—70 տոկոսի սահմաններում, պարզ է, որ պետք է կատարվի ի վնաս մանր գյուղացիական տնտեսությունների, որոնք մեծամասնություն են կազմում:

Հասկանալի է, որ Հռոմի պայմանագրի իրականացումը ուժեղացնում է մանրերի դուրս մղումը ոչ միայն գյուղատնտեսության, այլև արդյունաբերության մեջ: Մաքսային պատնեշների վերացումը մանր և միջակ ձեռնարկություններին զրկում է մրցունակությունից: ԳՖՌ-ում 1957-ից 1960 թվականի ընթացքում արհեստագործական ձեռնարկությունների թիվը նվազել է 20 հազարով: Եթե Ֆրանսիայում 1946-ից մինչև 1956 թվականը՝ 10 տարվա ընթացքում գրանցվել է ձեռնարկությունների միաձուլման 310 դեպք, ապա միայն 1959 թվականին գրանցվել է 931, իսկ 1960 թվականին՝ 1000 դեպք:

Այսպիսով «ընդհանուր շուկայի» մեխանիզմը խիստ ուժեղացրել է պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի ճնշումը ամբողջ ազգի, հատկապես աշխատավոր ժողովրդի վրա: Հակառակ «ինտեգրացիայի» ջատագովների հայտարարությունների, թե իբր բանվոր դասակարգի դրության բարելավման համար «ընդհանուր շուկան» բարենպաստ ներգործություն է ունենում, փաստերը հակառակն են վկայում: 1953-ից մինչև 1961 թվականը կյանքի արժեքը Ֆրանսիայում բարձրացել է 37 տոկոսով, որի հետևանքով այսօր «վեցյակի» անդամ այդ երկրում բանվոր դասակարգի ռեալ աշխատավարձը ավելի ցածր է, քան 1957 թվականին: Հոլանդիայում կյանքի արժեքը բարձրացել է 23 տոկոսով, Իտալիայում՝ 18, ԳՖՌ-ում՝ 14, Բելգիայում՝ 11 տոկոսով: Աշխատավարձի «սառեցման» քաղաքականությունը դարձել է ղեկավար սկզբունք 6 պետությունների համար, այն ժամանակ, երբ այդ երկրների 35 խոշորագույն տրեստների զուտ շահույթը 1957-ից մինչև 1961 թվականը ավելացել է 2,7 անգամ: Բանվոր դասակարգի կենսամակարդակի բարձրացումից չէ, որ «ընդհանուր շուկայի» երկրներում վերջին տարիներին շատանում են գործադուլային շարժումները: Միայն մեկ տարվա ընթացքում, 1961 թվականին, 1960 թվականի համեմատությամբ, գործադուլների թիվը, ըստ պաշտոնական տվյալների, Ֆրանսիայում ավելացել է 30, իսկ Իտալիայում՝ 40 տոկոսով: Գործադուլավոր-



ների թիվը նույն ժամանակամիջոցում Իտալիայում ավելացել է 20, իսկ Ֆրանսիայում՝ 140 տոկոսով (1960 թվականին գործադուլներին մասնակցել են 1 միլիոն 72 հազար բանվոր, իսկ 1961 թվականին՝ 2 միլիոն 568 հազար):

Եվրոպական տնտեսական համագործակցությունը նեոգաղութարարության գլխավոր հիմքն է: Հռոմի պայմանագրերը ենթադրում են որպես ասոցիացված անդամներ ներգրավել գաղութները և տնտեսապես կախյալ գլխավոր պետությունները: Վերջիններին օգնություն ցույց տալու նպատակով համագործակցության հանձնաժողովը առանձնացրեց 276 միլիոն դոլար, որից 59 տոկոսը ճանապարհների և օդանավակայանների շինարարության, 13 տոկոսը գյուղատնտեսության և միայն 1,7 տոկոսը արդյունաբերության կարիքների համար: Հենց միայն այս փաստը վկայում է, որ գաղութների շահագործմամբ հարստացած իմպերիալիստական տերություններն այսօր ամենևին շահագրգռված չեն նրանց ինքնուրույն զարգացման ուղու վրա դնել: «Վեցյակի» կողմից ցույց տրվող «օգնության» նպատակն է հետամնաց «ասոցիացված» երկրներին միշտ պահել ագրարային կցորդի դերում և հեշտացնել գյուղատնտեսական արդյունքը Եվրոպա փոխադրելու գործը: Հռոմի պայմանագիրը այդպիսի երկրներին տալիս է իրենց գյուղատնտեսական արդյունքը «ընդհանուր շուկայում» վաճառելու «նպաստավոր» պայմաններ, այսինքն՝ սահմանում է ցածր մաքսեր. սակայն նույն երկրները պարտավոր են իջեցնել «ընդհանուր շուկայից» ներմուծվող արդյունաբերական ապրանքների մաքսերը, մի հանգամանք, որը մեծապես կհարվածի այդ երկրների առանց այն էլ թույլ արդյունաբերությանը: Ինքնըստինքյան հասկանալի է, որ «ընդհանուր շուկային» Անգլիայի մասնակցելը խիստ կծանրացներ տնտեսապես հետամնաց շատ երկրների վիճակը: Այժմ Ազգերի բրիտանական համագործակցության երկրներից ապրանքները Անգլիա են արտահանվում շատ ավելի ցածր մաքսերով, քան այն մաքսերը, որոնցով նրանք հարկադրված կլինեին արտահանել, եթե Անգլիան մտներ «ընդհանուր շուկա» և որդեգրեր ԵՏՀ-ի միասնական մաքսային տարիֆները: Ահա թե ինչու Պակիստանի պրեզիդենտ Այուբ Խանը Լոնդոնում հայտարարեց, որ ստեղծելով «ընդհանուր շուկա», արևմտյան աշխարհը փակում է թույլ զարգացած երկրների ապրանքների մուտքը դեպի իր շուկան, այդ երկրներին հարկադրում է մնալ հումք արտադրողներ և թելադրել նրանց առևտրի պայմանները, ստիպելով մի քանի անգամ թանկ վճարել իր մատակարարած արդյունաբերական ապրանքների համար:

Եվրոպայի «ինտեգրացիայի» հարցի նկատմամբ ԱՄՆ-ի շահերը հակասական են: Արևմտյան Եվրոպան կլանում է ամերիկյան արտահանումների համարյա մեկ երրորդը: Եվրոպայի տնտեսական լրիվ «ինտեգրացիան» որոշակի դժվարություններ կստեղծեր ամերիկյան մոնոպոլիաների էքսպանսիայի ճանապարհին: Հետևաբար Արևմտյան Եվրոպայի գլխավոր կապիտալիստական երկրների միջև առևտրական հակասությունների սրումը, ինչ խոսք, կհամապատասխաներ ԱՄՆ-ի տնտեսական շահերին: Սակայն, մյուս կողմից, ամերիկյան իմպերիալիզմը ձգտում է ամեն կերպ ամրապնդել Հյուսիս-ատլանտյան ագրեսիվ բլոկը, որը չի կարող կայուն լինել, եթե նրա մասնակիցները վարեն ինքնուրույն տնտեսական քաղաքականություն և սրվեն տնտեսական հակասությունները նրանց միջև: Հետևաբար, ռազմա-քաղաքական շարժառիթներից ելնելով ԱՄՆ-ը հանդես է գալիս որպես արևմտաեվրոպական երկրների տարաձայնությունները վերացնող: Ամերիկյան իմպերիալիզմը ձգտում է ստեղծել

«Ատլանտյան տնտեսական համագործակցություն»՝ կապիտալիստական Եվրոպայի, Հյուսիսային Ամերիկայի, Ավստրալիայի և Նոր Զելանդիայի մասնակցությամբ։ ԱՄՆ-ի նպատակն է ընդլայնել «ընդհանուր շուկան», նրա մեջ ընդգրկել ավելի մեծ թվով երկրներ, դրանով տնտեսա-քաղաքական միավորման մեջ կկլանվեն և սկզբում անուղղակիորեն, ապա աստիճանաբար, անմիջականորեն ԱՄՆ-ի ագրեսիվ կառքին կլծվեն երկրներ, որոնք այժմ քաղաքականապես չեզոք են. մյուս կողմից՝ սերտ խմբավորման ընդլայնումը ԱՄՆ-ին հնարավորություն կտա տնտեսապես ավելի բազմակողմանի և լայնորեն ներթափանցելու այդ երկրները։ Արդեն 1962 թվականի հունվարին Բրյուսելում ԱՄՆ-ի և ԵՏՀ-ի միջև պայմանագիր ստորագրվեց մաքսային տարիֆները մոտ 20 տոկոսով կրճատելու մասին։

Չնայած նոր առաջացող ու խորացող տարաձայնություններին ու հակասություններին, իմպերիալիստական տերությունները ձգտում են լեզու գտնել ագրեսիվ բոլոր ուժերը սոցիալիզմի դեմ օգտագործելու խնդրում։

«Ինտեգրացված» Եվրոպայի երկրների ղեկավար շրջաններն այժմ նախապատրաստում են Արևմտյան Եվրոպայի քաղաքական «միավորման» իրականացումը, ստեղծելու համար «քաղաքական համագործակցություն» (ԵՔՀ), որն ուղղված է սոցիալիզմի համաշխարհային լագերի դեմ։ Այդպիսի ռազմա-քաղաքական «ինտեգրացիայի» ամենամոլի երկրպագուները Արևմտյան Գերմանիայի իմպերիալիստական շրջաններն են։ Որոշում է ընդունված «Եվրոպայի տնտեսական համագործակցության» սիստեմում քաղաքական վարչություն ստեղծելու մասին, որի խնդիրը պետք է լինի արտաքին միասնական քաղաքական կուրս մշակել այդ կազմակերպության անդամ երկրների համար։ Սա մի միջոց է, որի օգնությամբ ԳՖՌ-ն, հենվելով Փարիզ—Բոն առանցքի վրա, նոր, լայն հնարավորություններ կստանա միջամուխ լինելու և տոն տալու իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականությանը։ Արևմտյան Գերմանիայի ռևանշիստների պլանների իրականացման համար դարպասները լայնորեն բացեց այս տարվա հունվարի 22-ին Փարիզում կնքված համաձայնագիրը՝ Ադենաուերի և Դը Գոլի միջև։

Այսպիսով, միանգամայն իրավացի է «ընդհանուր շուկայի» մասնակից 6 երկրների կոմունիստական պարտիաների այն համատեղ հայտարարությունը, որ «... Ածխի և պողպատի եվրոպական միավորումն ու «ընդհանուր շուկան» մոնոպոլիստական կապիտալիզմի գործիքն են, որոնք ձգտում են ավելի ուժեղացնել աշխատավորների շահագործումը, իրենց ենթարկել ամբողջ էկոնոմիկան և սրել միջազգային լարվածությունը, գերմանական իմպերիալիզմին վերադարձնելով նրա ագրեսիվ ուժը»։

Սովետական Միությունը բազմիցս առաջարկություններ է մտցրել՝ նպատակ ունենալով զարգացնել եվրոպական երկրների միջև տնտեսական ու տեխնիկական կապերը։ Սովետական Միությունը հատկապես պաշտպանում է այն տեսակետը, որ աշխատանքի միջազգային բաժանման կարիքներին համապատասխան անհրաժեշտ է ստեղծել բոլոր պայմանները երկրների միջև փոխադարձաբար շահավետ ապրանքափոխանակության զարգացման համար։

Սովետական Միությունը կանգնած է համաեվրոպական հիմքերի վրա միջազգային տնտեսական համագործակցության զարգացման դիրքերում, անկախ երկրների սոցիալ-տնտեսական կարգերի տարբերություններից։

---

# ՈՒՍՈՒՑԻՉԸ ԵՎ ԴՊՐՈՑԸ


## ՎԼ. ԱԴԱՄՅԱՆՑ

Երևանի Մռավյանի անվան դպրոցի ուսմասվար


Ն. Ա. Դոբրոլյուբովը գտնում էր, որ ուսուցիչն աշակերտի համար պետք է լինի մարդկային կատարելության բարձրագույն օրինակ։ Հենց ուսուցչից էլ կցանկանայինք սկսել մեր զրույցը դպրոցական հասակի երեխաների հետ տարվող ուսումնա-դաստիարակչական աշխատանքների անբավարար վիճակի մի շարք պատճառների մասին։ Հարցը պետք է ուղղակի դնել. ունի՞ արդյոք իրավունք ուսուցանելու և երեխայի վրա բարոյապես ազդելու, նա, ով ինքն է կարիք զգում դաստիարակության և վատ է տիրապետում իր առարկային։

Հաճախ աշակերտները, հիացած իրենց սիրելի ուսուցչի բազմակողմանի գիտելիքներով և կյանքի փորձով, հարց են տալիս. «Որտեղի՞ց մեր ուսուցչին այդքան խելք և զգացմունքներ, այդքան հաստատակամություն ու բարություն»։ Նրանք պատրաստ են նույնիսկ իրենց սիրելի մանկավարժին համարել բազում գիտելիքների տեր մի անձնավորություն։ Հնարավոր է, որ երեխաները գերագնահատում են նրա գիտելիքները, բայց կռահո՞ւմ են նրանք, որ իրենց ուսուցիչն այդ ամենը ձեռք է բերել քրտնաջան աշխատանքով, կհասկանա՞ն նրանք, որ ուսուցչի աչքերի տակի կնճիռները վկայությունն են այն բազմաթիվ անքուն գիշերների, որ նա անցկացրել է գրքերի և տետրերի վրա աշխատելով։ Կպատկերացնե՞ն նրանք, թե նա քանի՜, քանի անգամ միայնության մեջ, ինքն իրեն, դասարանում ուսումնասիրվող գրական երկերի հերոսների նման, խորհել է գոյության իմաստի վրա, վճռելով այն հարցը, թե ո՞րն է իր տեղը կյանքում։ Իսկ որքա՞ն ժամանակ է կորցրել նա հերթերում՝ տոմսակ գնելու համար, որպեսզի լսի սիմֆոնիկ համերգը, հիանալի երգչի ձայնը, կամ դիտի հյուր եկած դրամատիկական խմբի խաղը։

Այո՛, այդպիսի ուսուցիչը գիտե խսկական երջանկության արժեքը, և նա իր սաներին դյուրին ճանապարհով չի առաջնորդի դեպի մտավոր ու հոգևոր հասունությունը, կսովորեցնի նրանց ամենուրեք և ամեն ինչում սիրել աշխատանքը։ Նա աշակերտների մեջ կպատվաստի սեր Հայրենիքի նկատմամբ, նրանց մեջ կդաստիարակի կամքի ուժ, սեփական արժանապատվության զգացում, կսովորեցնի լինել սկզբունքային և համառորեն հասնել առաջադրված նպատակին։ Այդպիսի ուսուցիչը, այդպիսի դաստիարակը կյանքից ետ չի մնա, միշտ կընթանա ժամանակի հետ։

Մ. Ի. Կալինինը, որը հաճախ էր ելույթ ունենում դաստիարակության հարցերի շուրջ, ասում էր. «...Ուսուցիչը, մի կողմից տալիս է, մյուս կողմից, սպունգի նման ներծծում է իր մեջ, ժողովրդից, կյանքից, գիտությունից վերցնում է ամենայն լավագույնը և այդ ամենը նորից տալիս է երեխաներին»։

Սակայն մեզ մոտ դեռ կան ուսուցիչներ, որոնք գրատախտակին գրելիս սխալներ են թույլ տալիս, ունեն ցածր կուլտուրա, հագնում են քաղքենու ճաշակով հագուստներ, կամ անփույթ են իրենց արտաքինի նկատմամբ, խոսում են բարձր, վեճերի և սկանդալների սիրահար են, ուսուցիչներ, որոնք լքել են իրենց ընտանիքը և այլն։ Արդյոք նրանք ունե՞ն իրավունք ոտք դնելու դպրոցի շեմքը։ Չնայած այդպիսի ուսուցիչների թիվը մեծ չէ, սակայն, եթե մանկավարժական կոլեկտիվում աշխատում է թեկուզ մեկ այդպիսի ուսուցիչ, ապա դա էլ բավական է, որպեսզի բացասաբար ազդի աշակերտի տպավորվող հոգու վրա, նրա սրտում կասկած առաջացնի ընդհանրապես ուսուցչի կերպարի ամբողջական կատարելության և անաղարտության նկատմամբ։

Մենք առիթ ենք ունեցել դպրոցներում հանդիպելու նաև այնպիսի ուսուցիչների, հատկապես երիտասարդների շրջանում, որոնք խստության քողի տակ պարզապես վարչարարություն են ա-

## ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅԱՆ ՈՒԺԸ ՊԱՐՏԻԱԿԱՆ ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ Է

Երիտասարդությունը մեր երկրի հույսն է, նրա պայծառ ապագան: Սովե-
տական երիտասարդությունը և նրա ավանգարդը՝ Լենինյան կոմերիտմիությու-
նը, իրենց ողջ ուժն ու ավյունը նվիրել ու նվիրաբերում են կյանքում կոմունիզ-
տական իդեալների մարմնավորմանը: «Սոցիալիստական շինարարության բո-
լոր էտապներում,- ասաց ՍՄԿՊ XXII համագումարում Ն. Ս. Խրուշչովը,—
սովետական երիտասարդությունը, կոմերիտականները ցուցաբերել են պար-
տիայի առաջադրած խնդիրների հստակ ըմբռնում, նրանք իրենց աշխատանքով
հաստատում են, որ ռևոլյուցիոն մեծ տրադիցիաների արժանավոր ժառանգորդ-
ներն են, իրենց հայրերի ու մայրերի փառավոր գործերի շարունակողը»:

Կոմերիտմիությունը դարձել է երիտասարդ սերնդի կյանքի ու աշխատան-
քի դպրոց, ստեղծագործ մի վիթխարի ուժ՝ կոմունիզմի համար մղվող պայքա-
րում: Սակայն կոմունիստական շինարարության շահերը պահանջում են պար-
տիական կազմակերպություններից օգնել կոմերիտմիությանն ավելի մեծ նա-
խաձեռնություն ցուցաբերելու կոմունիզմի նյութատեխնիկական բազայի
ստեղծման գործում:

ՍՄԿՊ XXII համագումարից հետո Լենինականի պարտիական կազմակեր-
պություններն սկսել են ավելի կոնկրետ ու արդյունավետ զբաղվել երիտա-
սարդության գաղափարական-քաղաքական դաստիարակության հարցով, կա-
տարելագործել են կոմերիտմիության ղեկավարման ձևերն ու մեթոդները: ՀԿՊ
Լենինականի քաղկոմը և սկզբնական պարտիական կազմակերպությունները
պարբերաբար քննության են առնում երիտասարդության դաստիարակության,
նրա կյանքի կենցաղի բարելավմանը վերաբերող բազմազան հարցեր: Մեր
քաղկոմի բյուրոյի նիստերում և պլենումում լսվել են. գուլպայի և կարի ֆաբ-
րիկաների, մահճակալի գործարանի, «Լենշին» տրեստի և ուրիշ պարտիական
կազմակերպությունների, երիտասարդության շրջանում տարվող աշխատանքին
վերաբերող հարցեր:

Լենինական քաղաքի երիտասարդությունն անձնվիրաբար աշխատում է
ՍՄԿՊ XXII համագումարի առաջադրած խնդիրների իրականացման համար:
Արդյունաբերության, տրանսպորտի ձեռնարկություններում, շինարարության
մեջ աշխատող հազարավոր պատանիներ և աղջիկներ պատվով են կատարում
իրենց ստանձնած սոցիալիստական պարտավորությունները: Կոմունիստական
շարժման մեջ ներգրավված են 6891 կոմերիտականներ ու երիտասարդներ,
կոմերիտական-երիտասարդական 215 բրիգադա պայքարում են կոմունիստա-



կան աշխատանքի կոչման համար. այդ բարձր կոչմանն են արժանացել արդեն
53 բրիգադա: Կ. Ղուկասյանի (հղկող հաստոցների գործարան), Վ. Մկրտչյա-
նի (գուլպայի ֆաբրիկա), Լ. Սահակյանի (շոգեքարշային դեպո), Հ. Մացակ-
յանի (էլեկտրաքարշային դեպո), Ժ. Արշակյանի (տրիկոտաժի ֆաբրիկա),
Հ. Մինասյանի (էլեկտրատեխնիկական գործարան) և շատ ուրիշների ղեկա-
վարած կոմերիտական-երիտասարդական բրիգադները, որոնք հաջողությամբ
են կատարում իրենց արտադրական առաջադրանքները և թողարկում միմիայն
բարձրորակ արտադրանք, արժանացել են կոմունիստական աշխատանքի բրի-
գադայի բարձր կոչման: Երիտասարդները պայքարում են մեքենաների ու սար-
քավորումների արտադրողականության բարձրացման, ներքին ռեսուրսների
հայտաբերման ու ռացիոնալ օգտագործման համար, հանդես են գալիս ընդդեմ
խոտանի, շռայլումների ու թափթփվածության:

Արտադրական ձեռնարկությունների կյանքին երիտասարդությանը ակտի-
վորեն մասնակից դարձնելու գործում դրական փորձ ունեն քաղաքի մի շարք
պարտիական կազմակերպություններ:

Մի ժամանակ միկրոէլեկտրաշարժիչների գործարանի պարտբյուրոն ան-
ուշադրության էր մատնել ԼԿԵՄ կազմակերպությունը, անբավարար էր հոգում
ձեռնարկության պատանիների ու աղջիկների կարիքները: Դրանով պետք է
բացատրել, որ այստեղ ընկած էր աշխատանքային կարգապահությունը, որոշ
երիտասարդներ թերակատարում էին արտադրական պլանները, թույլ էին տա-
լիս հակահասարակական արարքներ և այլն: Երբ կոմունիստներն իրենց ձեռքը
վերցրին երիտասարդության դաստիարակության գործը, դրությունն արմատա-
պես փոխվեց, աշխուժացավ գործարանի կոմերիտական կազմակերպության
գործունեությունը: Լայնորեն ծավալվեց կոմունիստական աշխատանքի շար-
ժումը. այժմ գործարանի 11 երիտասարդական բրիգադներ պայքարում են կո-
մունիստականի կոչման համար: Բոլոր կոմերիտականներն, առանց բացառու-
թյան, կատարում ու գերակատարում են իրենց առաջադրանքները: Կոմերիտա-
կաններ Գ. Մխիթարյանը և Հ. Ղազարյանը հանդես եկան հայրենասիրական
նախաձեռնությամբ՝ պահանջելով բարձրացնել արտադրական նորմաները.
երիտասարդների առաջարկությունը ջերմ պաշտպանություն գտավ կոլեկտի-
վում և այն արմատավորվում է: Ձեռնարկության բոլոր տեղամասերում ստեղծ-
վեցին կոմերիտական հսկիչ պոստեր, սկսեցին լույս տեսնել երիտասարդական
պատի թերթեր, կոմերիտականների քաղաքական ուսուցման գործն իրենց վրա
վերցրին կոմունիստները: Կազմակերպվել և խրախուսելի գործ է կատարում
«Կոմերիտական լուսարձակի» շտաբը:

Պարտիական կոմիտեի օգնությամբ գուլպայի ֆաբրիկայի ԼԿԵՄ կազմա-
կերպությունը մեծ գործ է կատարում երիտասարդ բանվորների նախաձեռնու-
թյան, ակտիվության զարգացման գործում: Ֆաբրիկայում գործում են կոմերի-
տական հսկիչ պոստեր, որոնք հետևում են, որպեսզի խնայողաբար ծախսվի
հումքը, թողարկվի բարձրորակ արտադրանք: Հսկիչ պոստերի անդամների աչ-
քից չեն վրիպում աշխատանքային տեղամասերում տեղ գտած թափթփվածու-
թյան, անտնտեսվարության դեպքերը: «Տագնապ» թերթիկը, որն ամփոփում է
երիտասարդական ռեյդերի արդյունքները, փակցվում է ցեխերում, խոտան ար-
տադրանք տվողների հաստոցների վրա և այլն: Կազմակերպված կոմերիտա-
կան հանձնաժողովը հետևում է, որ ժամանակին քննարկվեն ու արտադրու-
թյան մեջ արմատավորվեն ռացիոնալիզատորական և գյուտարարական արժե-

քավոր առաջարկությունները։ Իրականացվող բազմաթիվ միջոցառումներ նը-
պաստում են կոմունիզմի երիտասարդ կառուցողներին աշխատելու ուժերի ա-
ռավելագույն լարմամբ։ «Մենք՝ երիտասարդներս ենք կառուցել կոմունիզմը»—
այդպես է կոչվում այն լեկտորիումը, որը ֆաբրիկայում սկսել է գործել ՍՄԿՊ
XXII համագումարից հետո. երիտասարդության համար կարդացվող դասախո-
սությունններն անմիջականորեն առնչվում են արտադրության, կյանքի հետ։
Պարտկոմիտեն չի խնամակալում կոմերիտականներին, այլ ամեն կերպ զար-
գացնում է նրանց ձեռներեցությունը, աջակցում մինչև վերջ հասցնելու իրենց
լավագույն նախաձեռնությունները։

Հղկող հաստոցների գործարանում ցածր էր թողարկվող արտադրանքի
որակը։ Պարտկազմակերպությունն այդ հարցի վրա բևեռեց երիտասարդների
ուշադրությունը. կազմակերպվեցին զեկուցումներ, զրույցներ, բարելավվեց
երիտասարդ բանվորների տեխնիկական ուսուցումը. պարբերաբար միջոցա-
ռումներ իրականացրեց նոր տեխնիկայի ներդրման, տեխնոլոգիայի բարելավ-
ման ուղղությամբ։ Երիտասարդների նախաձեռնությամբ կազմակերպվեց
որակյալ արտադրանքի ռացիոնալիզատորական առաջարկությունների ցուցա-
հանդես, ինչպես և խոտանի թանգարան, ուր ցուցադրվում են անորակ արտա-
դրանքի նմուշները։ Արտադրանքի որակի բարձրացման ուղղությամբ արդյու-
նավետ գործ է անում «Կոմերիտական լուսարձակի» շտաբը, որի անդամները
դարձել են կոմունիստների ակտիվ ու մարտական օգնականները։ Երիտասար-
դության աջակցությամբ գործարանի պարտկազմակերպությանը հաջողվել է
զգալիորեն լավացնել թողարկվող հաստոցների որակը։

Երիտասարդ սերնդի գաղափարական-քաղաքական դաստիարակությունը
բարդ ու հարատև պրոցես է, այն պարտիական կազմակերպություններից պա-
հանջում է քրտնաջան աշխատանք, այս կամ այն միջոցառումը իրականացնե-
լիս խստիվ հաշվի առնել երիտասարդների տարիքային, կրթական առանձնա-
հատկությունները, նրանց կյանքի փորձը, ցանկություններն ու ձգտումները։
Իսկ դա պետք է անել վառ ու գունեղ, խելացի ու համոզիչ, կյանքի ու կոնկրետ
գործերի հետ սերտորեն առնչված։

Լենինական քաղաքի պարտիական կազմակերպությունները դաստիարակ-
չական գործի հիմքում դնելով աշխատանքի նկատմամբ կոմունիստական վե-
րաբերմունքի սերմանումը, ջանում են գաղափարական ներգործման բոլոր մի-
ջոցներով ձևավորել երիտասարդ մարդկանց մարքսիստական-լենինյան աշ-
խարհայացքը, նրանց մեջ պատվաստել և առօրյա վարքագիծ դարձնել կոմու-
նիզմ կառուցողի բարոյական սկզբունքները։

Այդ գործում մեծ դեր է վերապահված պրոպագանդային։ Կոմերիտական
քաղաքական-լուսավորության ցանցում քաղաքի 6000 կոմերիտականներ ու
երիտասարդներ ուսումնասիրում են Կոմունիստական պարտիայի պատմու-
թյունը, ՍՄԿՊ Ծրագիրը, պարտիայի ներքին ու արտաքին քաղաքականության
հարցերը և այլն։ 110 քաղխմբակի և սեմինարի ղեկավարներից 84-ը կոմու-
նիստներ են։ Միաժամանակ պարտիական լուսավորության ցանցում սովորում
են 1236 կոմերիտական ակտիվիստներ։ Երիտասարդության համար դասախո-
սություններ, զեկուցումներ են կարդում պարտիական, սովետական ղեկավար
շատ աշխատողներ, մասնագետներ, գիտության ու կուլտուրայի գործիչներ։
Կազմակերպվում են հարց ու պատասխանի և թեմատիկ երեկոներ, էքսկուր-
սիաներ, հանդիպումներ ռևոլյուցիայի վետերանների ու արտադրության առա-



ջավորների հետ, գրքերի քննարկումներ, տեխնիկական կոնֆերանսներ և այլն։
Վերջերս արդյունաբերական մի շարք ձեռնարկություններում կազմակերպվե-
ցին «Եկեք խոսենք անկեղծ», «Ուզում եմ ամեն ինչ իմանալ», «Ապրել և աշ-
խատել կոմունիստաբար» թեմաներով երեկոներ, որոնց մեծ սիրով մասնակցե-
ցին բանվոր երիտասարդները։

ՀԼԿԵՄ քաղկոմին առընթեր գործում է հասարակական կարծիքի ինստիտուտ,
որի պարապմունքներին մասնակցում են քաղաքի տարբեր խավերի ներկայա-
ցուցիչներ՝ երիտասարդ բանվորներ, ինժեներներ, բժիշկներ, գիտական աշխա-
տողներ, կոմերիտական ակտիվիստներ։ Այստեղ երիտասարդության համար
կազմակերպվում է կարծիքների աշխույժ փոխանակություն հետաքրքրող հար-
ցերի շուրջ։ Օրինակ, «Ի՞նչ եք մտածում դուք ձեր սերնդի մասին» և «Ինչպե՞ս
կցանկանայիք տեսնել ձեր քաղաքը» թեմաների քննարկմանը մասնակցել են
ունկնդիրներից շատ-շատերը։

Երիտասարդությանը սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և ժողովուրդ-
ների լենինյան բարեկամության ոգով դաստիարակելու նպատակով քաղաքի
կոմերիտական շատ կազմակերպություններում կազմակերպվում են հանդի-
պումներ, մերձեցման երեկոներ, սպորտային մրցումներ և այլն։ Գուլպայի,
մանվածքային, կարի ֆաբրիկաների, տեքստիլ կոմբինատի կոմերիտական-
ներն ու երիտասարդները Ադրբեջանի ու Վրաստանի, ինչպես և Միության մյուս
եղբայրական ռեսպուբլիկաների քաղաքների արդյունաբերության ու կուլտու-
րայի բնագավառներում ձեռք բերված նվաճումներին ծանոթանալու նպատա-
կով սիստեմատիկաբար կազմակերպում են արտադրական էքսկուրսիաներ,
նամակագրական կապ պահպանում նույնատիպ ձեռնարկությունների երիտա-
սարդ բանվորների հետ։ Գուլպայի ֆաբրիկայում կազմակերպված ժողովուրդ-
ների բարեկամության երեկոյին մասնակցում էին 15 ազգի ներկայացուցիչներ,
հաջող են անցել քաղաքի երիտասարդության համար սովետական ժողովուրդ-
ների բարեկամությանը նվիրված երեկոները։

Այդ գործում լավ չեն օգտագործվում եղած հնարավորությունները։ Հատ-
կապես վատ է դրված գործը բանվորական հանրակացարաններում, ուր ապ-
րում են տարբեր ազգերի հարյուրավոր երիտասարդներ. քիչ են կազմակերպ-
վում հանդիպումներ, զրույցներ, դասախոսություններ, էքսկուրսիաներ։

Պարտիական կազմակերպություններն սկսել են ավելի մեծ ուշադրություն
հատկացնել երիտասարդության կրթությանը, հանգստի ու ժամանցի կազմա-
կերպմանը։ Երեկոյան հանրակրթական դպրոցներում սովորում են 2300 պա-
տանի ու աղջիկ, հարյուրավոր երիտասարդներ առանց արտադրությունից
կտրվելու սովորում են միջնակարգ ու բարձրագույն մասնագիտական ուսում-
նական հաստատություններում։ Արտադրական ձեռնարկություններում մեծ
գործ է կատարվում երիտասարդ բանվորների տեխնիկական ուսուցման բնա-
գավառում։ Տրիկոտաժ ֆաբրիկայի կոմերիտականների նախաձեռնությամբ
վերջերս այնտեղ բացվեց տեխնիկական պրոգրեսի ուսումնարան, որտեղ հա-
սարակական կարգով պարապում են ֆաբրիկայի շատ մասնագետներ։

Սակայն քաղաքի ոչ բոլոր պարտիական կազմակերպություններն են, որ
ինչպես հարկն է զբաղվում են կոմերիտականների կյանքով։ Որոշ տեղերում
պարտիական ղեկավարությունը հանգում է միայն պարտիական ժողովներում
կոմերիտական կազմակերպությունների աշխատանքի առանձին հարցերի
քննարկման կամ դեպքից-դեպք կազմակերպվող միջոցառումներին։ Պատա-

ական չէ, որ որոշ ձեռնարկություններում (քարհանքերի վարչություն, «Կարմիր Նոյեմբեր» ֆաբրիկա, երկաթուղային շինարարության տեղամաս, մահճակալի գործարան, կահույքի ֆաբրիկա և այլն) կոմերիտականների ու երիտասարդների զգալի մասը լավ չի մասնակցում արտադրական կյանքին, չի կատարում ստանձնած պարտավորությունները, թողարկում է ցածրորակ արտադրանք: Շինմոնտաժային № 6 տրեստում աշխատում են 500-ից ավելի կոմերիտականներ, սակայն մինչև վերջերս էլ ամիսներով չէին հրավիրվում կոմերիտական ժողովներ, հազվադեպ էին անցկացվում հետաքրքրական միջոցառումներ, տասնյակ երիտասարդներ դատվել են մանր խուլիգանության համար:

Մեզ մոտ դեռևս կան երիտասարդներ, որոնք ապրում են իրենց ծնողների հաշվին, պարազիտի կյանք են վարում, թույլ են տալիս հակահասարակական արարքներ, խախտում սոցիալիստական համակեցության կանոնները: Այդ ցույց է տալիս, որ որոշ տեղերում դաստիարակչական աշխատանքը կրում է ձևական բնույթ, պարտիական և կոմերիտական կազմակերպությունները վճռական պայքար չեն մղում երիտասարդության գիտակցությունից անցյալի մնացուկները վերացնելու համար: Առանձին հիմնարկ-ձեռնարկություններում լավ չի կազմակերպվում դասախոսական պրոպագանդան, երիտասարդների հանգիստն ու ժամանակը, լավ չեն գործում կոմերիտական քաղխմբակները, չեն օգտագործվում կուլտուրայի տները, ակումբները, դահլիճները, դեռևս քիչ գործ է արվում սպորտային խմբակներում ու սեկցիաներում երիտասարդությանը մասսայաբար ներգրավելու ուղղությամբ:

Քաղաքի պարտիական կազմակերպությունները ձգտում են ամրապնդել ու մարտունակ դարձնել կոմերիտական սկզբնական կազմակերպությունները, աճեցնել ու դաստիարակել կոմերիտական ակտիվը և գաղափարական-քաղաքական աշխատանքի ծավալման միջոցով երիտասարդությանը լայնորեն ներգրավել կոմունիստական շինարարության արմատական խնդիրների լուծման գործում:

Լենինականի կոմերիտականները ջերմորեն արձագանքելով ՍՄԿՊ Կենտկոմի Նոյեմբերյան պլենումի որոշումներին, ջանում են 1963 թվականը դարձնել սխրագործ աշխատանքի նոր տարի: Ինչ խոսք, որ կոմունիստական շինարարության արդի պահանջներին համապատասխան կոմերիտական կազմակերպությունների կառուցվածքի վերակառուցումը բարերար ազդեցություն կունենա կոմունիզմի երիտասարդ կառուցողների դաստիարակության, նրանց աշխատանքային ու քաղաքական ակտիվության բարձրացման գործում:

Դ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
ՀԿՊ Լենինականի քաղկոմի քարտուղար

## ՄԵՐ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԸ

Պարտիական, սովետական և տնտեսական ղեկավար կադրերին տնտեսական կայուն գիտելիքներ տալու նպատակով 1960 թ. սկզբներին Իջևանում կազմակերպվեց ու հասարակական հիմունքներով գործում է Տնտեսագիտական համալսարան: Մեր համալսարանն ունի գյուղատնտեսության, արդյունաբերության, շինարարության և առևտրի էկոնոմիկայի ֆակուլտետներ, ուր սովորում են համապատասխան բնագավառի տասնյակ աշխատողներ: Համալսարանն ունի իր ուսումնական ծրագրերը, այնտեղ հասարակական կարգով դասախոսում են տեսականորեն պատրաստված մի շարք ընկերներ: Դասախոսություններ կարդալու համար պարբերաբար հրավիրում ենք նաև ռեսպուբլիկայի առանձին գիտական աշխատողների, որոնք միաժամանակ տեսական-մեթոդական անհրաժեշտ օգնություն են ցույց տալիս մեր դասախոսներին՝ ծրագրով նախատեսած թեմաները լավ նախապատրաստելու և անցկացնելու համար: Մասնավորապես մեզ լավ են օգնում Երևանի Գյուղատնտեսության էկոնոմիկայի ու արտադրության կազմակերպման ինստիտուտի աշխատակիցներ Ա. Այրումյանը, Կ. Թումանյանը, Ս. Հովհաննիսյանը, Ս. Ղուշչյանը, Գիտությունների ակադեմիայի էկոնոմիկայի ինստիտուտից՝ Ա. Երիցյանը և ուրիշներ:

Համալսարանի ֆակուլտետների պարապմունքները տեղի են ունենում ամիսը մեկ անգամ, սահմանված օրը: Ունկնդիրներն ուսումնասիրում են ծրագրով նախատեսված թեմաները և, հատկապես այնպիսի տեսական լուրջ պրոբլեմներ, ինչպիսիք են՝ սոցիալիստական արտադրաեղանակը և նրա զարգացման օրինաչափությունները, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը, քաղաքում ու գյուղում հասարակական հարաբերությունների հետագա զարգացման ուղիները, ՍՄԿՊ XXII համագումարի, Կենտկոմի Մարտյան ու Նոյեմբերյան պլենումների որոշումները սոցիալիստական էկոնոմիկայի արմատական խնդիրների վերաբերյալ և այլն:

Տեսական հարցերի ուսումնասիրությունն անմիջականորեն շաղկապվում է արտադրության ու առևտրի գործնական, առօրյա հարցերի հետ, մի բան, որը մեծ չափով նպաստում է ունկնդիրներին՝ իրենց պրակտիկ գործունեության ընթացքում արդյունավետ օգտագործելու արտադրության ներքին ռեզերվները, խելացիորեն տնտեսավարելու:

Առևտրի էկոնոմիկայի ֆակուլտետի պարապմունքներից մեկում, ուր քննարկվում էր «Արտադրության ծախքեր» թեման, ունկնդիրների ուշադրությունը մասնավորապես հրավիրվեց այն հարցի վրա, որ շրջապտույտի ցանցում հնարավորություններ կան անարտադրողական ծախքերը կրճատելու, աշխատանքն ավելի հստակ կազմակերպելու համար: Դա թելադրեց մարդկանց խորհելու, կատարելու բազմաթիվ հաշվարկումներ: Օրինակ, տվյալ թեման քննարկելիս ունկնդիրներից մեկն արտահայտեց այն միտքը, որ, եթե որոշ ապրանքներ ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններից փոխադրվեն ոչ թե ավտոտրանսպորտի, այլ երկաթուղագծի միջոցով, ապա նկատելի չափով կպակասեն ծախքերը: Այդ առաջարկությունն արժանացավ բոլորի հավանությանը և այժմ արմատավորվել է պրակտիկայում, տալով ֆինանսական միջոցների զգալի տնտեսում:

Իջևանի շինարարական առարկաների արտադրության կոմբինատում շենքի ծածկի սնամեջ երկաթբետոնե սալիկներն արտադրվում էին պրիմիտիվ եղանակով, հիմնականում՝ ձեռքով. երկաթբետոնը սկզբում կաղապարվում էր, ապա նոր տեղափոխվում խտացնող սարքավորման վրա: Շինարարության էկոնոմիկայի ֆակուլտետում «Աշխատանքի արտադրողականության բարձրացումը շինարարության մեջ» թեման անցնելիս Հ. Աղասարյանը համոզիչ փաստարկումներով ցույց տվեց, թե որքան օգտավետ է աշխատանքային պրոցեսի

մեքենայացումը։ Սակայն նա դրանով չբավարարվեց. մի խումբ մարդկանց հետ մեկտեղ Հ. Աղասարյանը երկարատև պրպտումներից հետո ստեղծեց մի հարմարանք, որը հնարավորություն տվեց բետոնը կաղապարել և խտացնել միաժամանակ։ Արտադրության մեջ վերոհիշյալ սարքավորման արմատավորմամբ երկու անգամ բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը։ Ուշադրության արժանացավ նաև ունկնդիր Հ. Ադամյանի առաջարկությունը. երկաթբետոնե առարկաների պատրաստման համար մինչ այդ օգտագործվող Անիի պեմզան փոխարինվեց տեղական հումքով՝ իջավ արտադրանքի ինքնարժեքը, 20 տոկոսով պակասեցին տրանսպորտային ծախսերը։

Գործարար մթնոլորտում անցավ արդյունաբերության էկոնոմիկայի ֆակուլտետի այն պարապմունքը, որի թեման էր՝ «Արդյունաբերության ճիշտ մասնագիտացումը կարևոր նախապայմանն է աշխատանքի արտադրողականության բարձրացման և արտադրանքի ինքնարժեքի իջեցման գործում»։ Թեմայի քննարկումն առաջ բերեց մտքերի աշխույժ փոխանակություն, տաք վիճաբանություն։ Մարդիկ իրենց մտքերը հաստատում էին տեսականորեն, տնտեսագիտական լուրջ հաշվարկումներով։ Ունկնդիրներից Գ. Սարուխանյանը, Վ. Եսայանը, Ի. Մարգարյանը, Մ. Պետրոսյանը և ուրիշներ, նշելով Իջևանի արդյունաբերության մասնագիտացման և ձեռնարկությունների տեղադրման գործում գոյություն ունեցող թերությունները, հայտնեցին իրենց կոնկրետ, գործնական նկատառումները։ Նշվեց, որ արդյունաբերական ձեռնարկությունների մասնագիտացման գործում եղած հիմնական թերությունն այն է, որ կոնստրուկտիվ-տեխնոլոգիական տեսակետից միատեսակ արտադրանքի արտադրությունը և վերանորոգումը կատարվում են արդյունաբերական տարբեր ձեռնարկություններում։ Տարիներ առաջ Իջևանի փայտամշակման և տեղարդ կոմբինատներում ստեղծվել են կահույքի պատրաստման ցեխեր, որոնք շատ հաճախ արտադրում են միևնույն տեսակի կահույք, սակայն տարբեր որակով ու ինքնարժեքով։ Ունկնդիրները կարծիք հայտնեցին, որ լավ կլինի միացնել վերոհիշյալ երկու ցեխերը, հնարավորության դեպքում դրանց բազայի վրա կառուցել կահույքի գործարան, դրանով իսկ նպաստավոր պայմաններ ստեղծել արտադրության տեխնոլոգիական պրոցեսների մեքենայացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման և աշխատանքի արտադրողականության բարձրացման համար։

Կամ՝ ավտոմեքենաների, շարժիչների և այլ սարքերի վերանորոգման պատվերներ են ընդունում «Հայգյուղտնտեխնիկայի» Իջևանի բաժանմունքը, նորոգման մեխանիկական և ավտովերանորոգման արհեստանոցները, որոնք պատվերները կատարում են տարբեր ինքնարժեքով։ Ունկնդիր Գ. Սարուխանյանը գտնում էր, որ նորոգման մեխանիկական արհեստանոցի մեխանիկական և ձուլման ցեխերի բազայի վրա հնարավոր է կազմակերպել մեխանիկական և ձուլման գործարան, իսկ վերանորոգումները կենտրոնացնել մեկ ձեռնարկությունում։ Մի այլ ունկնդրի՝ Վ. Եսայանի կատարած ուսումնասիրությունից պարզվեց, որ փայտամշակման կոմբինատի թողարկած արտադրանքի ինքնարժեքը բարձր է այն պատճառով, որ կոմբինատը թողարկում է տարանքային տախտակ, իսկ պարկետի արտադրության համար պահանջվող ֆրիզան ստանում երկրի հեռավոր վայրերից։ Նա գտնում էր, որ եթե կոմբինատին հնարավորություն տրվի տարանքային տախտակի փոխարեն ֆրիզա արտադրելու, ապա յուրաքանչյուր խորանարդ մետր պարկետի ինքնարժեքը կիջ-



նի 30 կոպեկով։ Նշված առաջարկություններին մենք իրազեկ ենք դարձրել համապատասխան վերադաս կազմակերպություններին և սպասում ենք լուծման։

Մի այլ պարապմունքի ժամանակ, խոսելով արտադրության ռեզերվների օգտագործման մասին, խոսք եղավ, որ փայտամշակման կոմբինատում անհրաժեշտ է օգտագործել փայտանյութի թափուկները։ Այժմ այդ նպատակով կառուցվում է նոր ցեխ, ուր փայտանյութի թափուկներից նախատեսվում է պատրաստել ատաղձագործական սալիկներ կահույքի արտադրման համար։

Բարձր մակարդակով են անցնում նաև համալսարանի գյուղատնտեսության էկոնոմիկայի ֆակուլտետի պարապմունքները. ունկնդիրներն ստանում են ոչ միայն անհրաժեշտ տեսական գիտելիքներ, այլև ձեռք են բերում դրանք կենսագործելու հմտություն։ Այսպես. «Աշխատանքի կազմակերպումը, նորմավորումը, վարձատրումը կոլտնտեսություններում և սովխոզներում» թեման խոր ուսումնասիրելու նպատակով ունկնդիրներին նախօրոք տրվեցին դասախոսության թեզիսները, հանձնարարվեց նրանց իրենց տնտեսություններում ուսումնասիրել աշխատանքի կազմակերպման, նորմավորման և վարձատրման վիճակը։ Թեմայի քննարկման ժամանակ ունկնդիրները ջանում էին տեսական դրույթները հիմնավորել ու ամրապնդել կյանքից առնված կոնկրետ փաստերով ու օրինակներով։

Պարզվեց, օրինակ, որ Իջևանի և Կույբիշևի սովխոզներում անասնապահների վարձատրությունը սահմանել էին ոչ թե ըստ տրված արտադրանքի քանակի ու որակի, այլ ըստ խնամած անասունների գլխաքանակի, որը թուլացնում էր աշխատողների նյութական շահագրգռվածությունը. մի շարք կոլտնտեսություններում գործում էին տեխնիկա-տնտեսական տեսակետից չհիմնավորված նորմաներ. այդ հասցրել էր այն բանին, որ երկրորդական կամ օժանդակ աշխատանքում ներգրավված բանվորը մի քանի անգամ ավելի շատ վարձատրություն էր ստանում, քան անմիջապես արտադրության ոլորտում աշխատողը։ Սակայն միայն թերությունների մասին չէ, որ լրջորեն խոսվեց այդ օրվա պարապմունքում։ Կույբիշևի, Աչաջրի, Իջևանի տնտեսություններն ունեն աշխատանքի կազմակերպման դրական փորձ. Կույբիշևի տնտեսությունում խոշորացրել են անասնաբուծական բրիգադները, Աչաջրում ստեղծել են տրակտորա-դաշտավարական կոմպլեքսային բրիգադներ, Իջևանի սովխոզում խոզաբուծական բրիգադ խոշորացնելու, խոզերի ցեղայնությունը բարելավելու շնորհիվ խոզի մսի ինքնարժեքն իջել է երեք անգամ։

Ունկնդիրների առաջարկությունների հիման վրա, պարապմունքից հետո արտադրական վարչության մի խումբ մասնագետներ՝ Գյուղատնտեսության էկոնոմիկայի և արտադրության կազմակերպման ինստիտուտի աշխատողների հետ միասին մշակեցին և կոլտնտեսություններն ուղարկեցին «Խորհուրդներ աշխատանքի լրացուցիչ վարձատրության կիրառման մասին» հրահանգ-նամակը։ Իջևանի սովխոզի առաջավոր խոզաբույծների փորձն ընդհանրացնելու նպատակով հրատարակվեց բյուլետեն։

Արդյունավետ անցավ նաև «Արտադրության մասնագիտացումը և գյուղատնտեսական ճյուղերի ճիշտ զուգորդումը կոլտնտեսություններում և սովխոզներում» թեմայի քննարկումը։ Ունկնդիրներից շատերը փաստերով ցույց տվեցին անասնաբուծական մանր ֆերմաների անարդյունավետությունը. Համակողմանի ուսումնասիրության վրա ունկնդիրներից մեկը ցույց տվեց, որ ճիշտ

չեն այն ընկերները, ովքեր դեմ են Իջևանի տնտեսական շրջանում խոշոր եղջե-
րավոր անասնաբուծության հետագա զարգացմանը։ Նույն պարապմունքում
խոսվեց նաև խոտադաշտային ցանքաշրջանառության վնասակարության, կերի
համար շարահերկ կուլտուրաների արմատավորման անհրաժեշտության մա-
սին։

Տնտեսագիտական համալսարանը կատարում է նաև առաջավոր փորձի
տարածման ու արմատավորման դպրոցի դեր։ Այդ նպատակով, հաճախ պա-
րապմունքներն անց են կացվում հենց գյուղում։ Օրինակ, «Անասնաբուծության
րապմունքներն անց են կացվում հենց գյուղում։ Օրինակ, «Անասնաբուծության
վիճակը և զարգացման հեռանկարները Ուզունթալայի կոլտնտեսությունում» և
«Ուզունթալայի ֆինանսական տնտեսությունը» թեմաներն անցնելիս ֆակուլ-
տետի հերթական պարապմունքը տեղի ունեցավ Ուզունթալայում։ Կույբիշևում
քննարկվեց «Սոցիալիստական գյուղատնտեսության արտադրանքի ինքնարժե-
քի իջեցումը հանրային արտադրության աճի անսպառ աղբյուրն է» թեման.
դեկուցողն էր Կույբիշևի սովխոզի դիրեկտոր Մ. Թամրազյանը, հարակից զե-
կուցումներով հանդես եկան Իջևանի սովխոզի դիրեկտոր Վ. Թամրազյանը և
Ճարիգյուղի կոլտնտեսության վարչության նախագահ Ս. Գևորգյանը։ Պա-
րապմունքներն ամփոփեց Գյուղատնտեսական էկոնոմիկայի և արտադրության
կազմակերպման ինստիտուտի դիրեկտոր Ա. Այրումյանը։

Համալսարանի բոլոր ֆակուլտետներում հանգամանորեն ուսումնասիրվել
են ՍՄԿՊ Կենտկոմի Նոյեմբերյան պլենումի որոշումները։

Մեր ասածից թող ընթերցողը չկարծի, թե համալսարանի պարապմունք-
ները կրում են արտադրական խորհրդակցության կամ ժողովի բնույթ։ Ուսում-
նական ծրագրերով նախատեսված տեսական հարցերի ուսումնասիրությունը
մեզ մոտ կատարվում է ո՛չ թե վերացական կերպով, այլ կյանքի, արտադրու-
թյան հետ սերտորեն զուգորդված։

Տնտեսագիտական համալսարանի դրական օրինակով 1962 թ. վերջերին
հասարակական հիմունքներով Իջևանում ստեղծվեց «Ժողովուրդների բարեկա-
մության համալսարան»։ Առաջին պարապմունքը նվիրված էր հայ և վրաց ժո-
ղովուրդների բարեկամությանը։ «ՍՍՌՄ ժողովուրդների լենինյան բարեկամու-
թյան» մասին զեկուցեց «Զարյա Վոստոկա» օրաթերթի բաժնի վարիչ Զ. Բերի-
ձեն, «Լուսավոր էջեր հայ և վրաց ժողովուրդների դարավոր բարեկամության
պատմությունից» թեմայով՝ գրող Բ. Սեյրանյանը։ Հայ և ադրբեջանական ժո-
ղովուրդների բարեկամությանը նվիրված պարապմունքին հանդես եկան Ադրբե-
ջանի Կոմունիստական պարտիայի Կենտկոմից՝ Ն. Ահմեդովը, բանասիրական
գիտությունների դոկտոր-պրոֆեսոր Գ. Անտոնյանը։ Հաջող անցավ նաև հայ և
Մերձբալթյան ժողովուրդների բարեկամությանը նվիրված պարապմունքը, ուր
հանդես եկան աշխարհագրական գիտությունների թեկնածու Կ. Ավետիսյանը,
բանասիրական գիտությունների թեկնածու Արծ. Կարապետյանը, ապա սովե-
տական ժողովուրդների բարեկամությանը նվիրված իր բանաստեղծությունները
կարդաց բանաստեղծ Աշոտ Գրաշին։ Պարապմունքների վերջում միշտ էլ հան-
դես են գալիս արվեստի գործիչները, ցուցադրվում են կինոնկարներ և այլն։

Ջ. ԱՆԱՆՅԱՆ
Իջևանի տնտեսագիտական
համալսարանի ռեկտոր



# ՈՒՆԿՆԴԻՐՆԵՐԻ ԱԿՏԻՎՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ

Մեծ Պարնիի կոլտնտեսության քսանչորս անդամներ՝ կոմունիստներ ու անկուսակցականներ քաղաքական լուսավորության ցանցում ուսումնասիրում են գյուղատնտեսության էկոնոմիկան, կոլտնտեսային արտադրության արմատական հարցերը։ Քաղխմբակում առանձին պարապմունքներ են հատկացվել ՍՄԿՊ Կենտկոմի Նոյեմբերյան պլենումի որոշումների ուսումնասիրությանը։

Ես ցանկանում եմ պատմել, թե մեր քաղխմբակում ինչպես կազմակերպվեց պլենումի նյութերի ուսումնասիրությունը։

Մեր պարտիայի վարած լենինյան կուրսը, ժողովրդական տնտեսության պարտիական ու պետական ղեկավարման կատարելագործման օբյեկտիվ անհրաժեշտությունը լավ պարզաբանելու նպատակով, առաջին հերթին ես հանգամանորեն ծանոթացա Նոյեմբերյան պլենումի փաստաթղթերին, ապա նորից դիմեցի Լենինի աշխատություններին և պլենումի որոշումների լույսի տակ վերլուծեցի մեր արտելի տնտեսական անցած տարվա արդյունքները։ Այդ վերլուծությունը խիստ անհրաժեշտ էր նախատեսած թեմաները խոր պարզաբանելու և տնտեսական նոր տարվա պրակտիկ գործունեության ունկնդիրներին լավ նախապատրաստելու համար։

Սովորաբար ներածական խոսքում հակիրճ շարադրում եմ թեմայի հիմնական հարցերը, դրանց վրա կենտրոնացնելով ունկնդիրների ուշադրությունը։ Ապա սկսվում է նյութի կոլեկտիվ քննարկումը՝ աշխույժ ու անկաշկանդ ընկերական զրույցը։

Այսպես. «Յոթնամյա պլանի կատարման չորս տարվա մի քանի արդյունքներ» թեմայի քննարկմանը մասնակցեցին խմբակի շատ անդամներ։ Ե. Ուստյանը, խոսելով սոցիալիստական արդյունաբերության վերելքի մասին, պարզաբանեց առաջիկայում ևս ծանր ինդուստրիայի առավել զարգացման լենինյան քաղաքականության կիրառման, արտադրության միջոցների արդյունաբերության և սպառման միջոցների արդյունաբերության ճիշտ հարաբերակցության պահպանման հարցերը։ Ունկնդիր Ա. Ղուկասյանը ցույց տվեց, թե պարտիայի ձեռնարկած հեղաշրջող միջոցառումները ինչպիսի բարերար ազդեցություն են ունեցել գյուղատնտեսության անշեղ վերելքի գործում. Նա իր միտքը հաստատելու համար բերեց կոնկրետ փաստեր հարազատ կոլտնտեսությունից՝ այն է. 1953 թվականի 50 հազար ռուբլու դիմաց արտելի եկամուտները հասել են 400 հազարի, մեծ չափով ավելացել է գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։

— Կենտկոմի Նոյեմբերյան պլենումը,— շարունակեց նա,— խնդիր դրեց 1963 թվականին հացահատիկային և լոբազգի կուլտուրաների ցանքերն ընդարձակել 13 միլիոն հեկտարով և հացահատիկի գնումները հասցնել 4,2—4,5 միլիարդ փթի։ Պարտիայի կոչին մենք պետք է պատասխանենք գործով. մեր տնտեսությունը ևս ունի հացահատիկի արտադրությունն ավելացնելու ռեալ հնարավորություններ։

— Իսկ ինչի՞ հաշվին,— միջամտում է ունկնդիր Վ. Աշուղաթոյանը։

Ն. Բաբայանը, պատասխանելով այդ հարցին, ասաց, որ ցանքատարածությունների կառուցվածքի հետագա բարելավման և չորացրած ճահիճների հողային տարածությունների օգտագործման հաշվին հնարավոր է 1963 թ. հարյուր հեկտարով ընդլայնել հացահատիկային կուլտուրաների ցանքերը, ինչպես

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՍԵՓԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԵՐԿՈՒ ՁԵՎԵՐԻ ՄԵՐՁԵՑՄԱՆ ՄԱՍԻՆ

Սոցիալիզմից կոմունիզմին անցնելու շրջանում բարձրանալու է կոլտնտեսային արտադրության հանրայնացման մակարդակը, տեղի է ունենալու կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականության միաձուլում համաժողովրդական սեփականության հետ, անհետանալու են դրանց սահմանները:

Կոլտնտեսային կարգի անտեսական ծաղկումը պայմաններ է ստեղծում, որ կոլտնտեսային սեփականությունը աստիճանաբար մոտենա, իսկ հետագայում նաև ձուլվի համաժողովրդական սեփականությանը՝ դառնալով միասնական կոմունիստական սեփականություն (ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը, Հայպետհրատ, էջ 498—499): Դրա անտեսական հիմքը կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերն են, որոնք անընդհատ աճում ու որակապես փոփոխվում են: Անբաժանելի ֆոնդերն ընդգրկում են կոլտնտեսությունների հիմնական ֆոնդերը և կազմում են հանրային տնտեսության հիմքը:

Կոլտնտեսությունների կազմակերպման շրջանում անբաժանելի ֆոնդերը գոյացան գյուղացիների մասնավոր աշխատանքի կուտակման, պարզ միավորման հիման վրա: Բայց հետագայում, սոցիալիստական ընդլայնված վերարտադրության ընթացքում, դրանք մի քանի անգամ բազմապատկվեցին: Այսպես, ՍՍՌՄ կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերը 1932 թ. 470 միլիոն ռուբլու դիմաց 1960 թ. կազմեցին 19,7 միլիարդ ռուբլի:

Հայկական ՍՍՌ կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերը 1940 թ. կազմում էին 26,9 միլիոն ռուբլի, իսկ 1960 թ. 158,9 միլիոն ռուբլի: Անբաժանելի ֆոնդի մեջ փայավճարների գումարը 1960 թ. կազմել է 1,2, 1953 թ. 3,1 տոկոսի դիմաց: 1960 թ. մեկ աշխատունակ կոլտնտեսականի հաշվով անբաժանելի ֆոնդի գումարի միջինը Հայկական ՍՍՌ-ում կազմել է 545 ռուբլի, դրամական միջոցները՝ 350 ռուբլի:

Կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերը ստեղծվել են ո՛չ միայն կոլտնտեսականների, այլև ամբողջ հասարակության աշխատանքով, բանվոր դասակարգի օգնությամբ, սոցիալիստական պետության անմիջական մասնակցությամբ:

Գյուղատնտեսության մեջ օգտագործվող հողային տարածության մեկ հեկտարին ընկնող անբաժանելի ֆոնդը Հայկական ՍՍՌ-ում 1960 թ. միջին հաշվով կազմել է 148, այդ թվում դրամական միջոցները՝ 98 ռուբլի:

ՄՏԿ-ների վերակազմվելուց հետո զգալի միջոցներ հատկացվեցին գյուղատնտեսական տեխնիկա ձեռք բերելուն: Այս հանգամանքն ավելի ամրապնդեց կոլտնտեսային արտադրության նյութատեխնիկական բազան և կոլտնտե-



սությունների արտադրական ֆոնդերում առաջ բերեց կառուցվածքային լուրջ փոփոխություններ: Եթե կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերի կազմում բանող անասունների և տրակտորների ու այլ շարժիչների արժեքը 1950 թ. Հոկտեմբերյանի շրջանում գրեթե հավասար էր, ապա 1960 թ. փոխվել է այդ հարաբերությունը. շարժիչներին բաժին էր ընկնում 93, իսկ բանող անասուններին՝ 7 տոկոսը:

Պետությունը կոլտնտեսություններին բաց է թողել միլիարդավոր ռուբլու վարկեր, երբ կոլտնտեսությունները թույլ են եղել, իսկ հետագայում չեղյալ է համարել այդ պարտքերը: Բազմիցս կոլտնտեսություններին տրվել է սերմացու ու պարենափոխատվություն: Դրանց մի մասը կոլտնտեսությունները վերադարձրել են, իսկ մի մասն էլ դուրս է գրվել:

Կոլտնտեսությունները պետությունից հսկայական վարկեր են վերցրել բուսաբուծության, մելիորացիայի և իրիգացիայի, կուլտուր-լուսավորական շինարարության և այլ նպատակների համար: Գյուղբանկը ռեսպուբլիկայի կոլտնտեսություններին 1953—1960 թթ. տվել է ավելի քան 18 միլիոն ռուբլի վարկ (հին դրամով): Տեխնիկան գնելու համար կոլտնտեսությունների 1960 թ. պետությունից ստացված վարկը 1957 թ. համեմատությամբ աճել է 1,9 անգամ:

Կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերը ընթացիկ յոթնամյակում և քանամյակում ավելի արագ կաճեն, որովհետև համախառն արտադրանքից ավելի արագ է աճելու նրանց ապրանքային արտադրանքը (դրամական միջոցների մուտքն ավելի մեծ տոկոս է կազմելու, քանի որ կոլտնտեսային արտադրանքը կոլտնտեսությունների համար այսուհետև ավելի նպաստավոր գներով վաճառվելու է պետությանը):

Անբաժանելի ֆոնդերի նշանակությունը չի սահմանափակվում նրանով, որ դրանք որոշում են կոլտնտեսությունների տեխնիկական հագեցվածությունը: Դրանց հաշվին իրագործվում է նաև կուլտուր-կենցաղային լայն շինարարություն՝ կառուցվում են դպրոցներ, հիվանդանոցներ, գրադարաններ, կոլտնտեսային հանգստյան տներ, ճաշարաններ, սպորտհրապարակներ, գիշերօթիկ դպրոցներ, ծերանոցներ, ճանապարհներ և այլն: Հետևաբար, անբաժանելի ֆոնդերն օգտագործվում են կոլտնտեսությունների հանրային տնտեսության հետագա զարգացման և կոլտնտեսականների նյութական բարեկեցության բարձրացման նպատակով:

Օգտագործման տեսակետից անբաժանելի ֆոնդերն ունեն նաև համաժողովրդական սեփականության գծեր: Կոլտնտեսականների հետ միասին ֆոնդերի բարիքներից օգտվում են նաև բանվորներն ու ինտելիգենցիան: Բացի այդ, ՍՍՌՄ յուրաքանչյուր քաղաքացի, մտնելով կոլտնտեսության մեջ, անբաժանելի ֆոնդերի նկատմամբ դառնում է նույնպիսի սեփականատեր, ինչպիսին կոլտնտեսության մյուս բոլոր անդամներն են: Այսպիսով, կոլտնտեսային կարգի զարգացմամբ անբաժանելի ֆոնդերն ավելի ու ավելի են մոտենում համաժողովրդական սեփականությանը՝ ըստ իրենց աղբյուրների, որակական կառուցվածքի և օգտագործման ձևի:

Կոլտնտեսությունների հանրային արտադրությունն այսօր ամբողջովին ընդգրկել է գյուղատնտեսության բոլոր ճյուղերը, որի շնորհիվ կբավարարվեն կոլտնտեսականների աճող պահանջմունքները:

Կոլտնտեսային կարգի զարգացման սկզբնական շրջանում հիմնական

ուշադրություն հատկացվեց դաշտավարության՝ ամենից առաջ հացահատիկային տնտեսության և տեխնիկական կուլտուրաների արտադրության հանրայնացման վրա։ Կոլտնտեսականների անձնական օժանդակ տնտեսությունը դաշտավարության մեջ հենց սկզբից աննշան տեղ էր գրավում, բացառությամբ կարտոֆիլի և բանջարեղենի։

Այլ էր դրությունը անասնաբուծության մեջ։ Դեռևս 1941 թվականի սկզբին կոլտնտեսությունների օժանդակ տնտեսություններում էր գտնվում երկրում գոյություն ունեցող բոլոր խոշոր եղջերավոր անասունների 35,3 (կովերի՝ 45,5 տոկոսը), խոզերի՝ 31,3, ոչխարների՝ 31,8, այծերի՝ 53,4 տոկոսը։ Այժմ կոլտնտեսականների պահանջմունքների զգալի մասը դեռևս բավարարվում է նրանց օժանդակ տնտեսության հաշվին։ 1961 թվականի սկզբին կոլտնտեսականների օժանդակ տնտեսություններում էր գտնվում երկրում գոյություն ունեցող բոլոր խոշոր եղջերավոր անասունների 19,7 (կովերի 29,2 տոկոսը), խոզերի՝ 17,5, ոչխարների՝ 14,6, այծերի՝ 44,1 տոկոսը։

Անձնական, օժանդակ տնտեսությունից ստացվող եկամուտը շոշափելի բաժին է կազմում կոլտնտեսային ընտանիքի բյուջեում, որը սակայն աստիճանաբար կորցնելու է իր նշանակությունը։

Օժանդակ տնտեսության վերացումը տեղի կունենա ոչ թե վարչական միջոցներով, վերևից եկող հրամանագրերով, այլ միայն կամավորության սկզբունքով, աստիճանաբար՝ հանրային արտադրության աճին և կոլտնտեսականների անձնական համոզմունքին զուգընթաց։ «Որոշակի էտապում կոլտնտեսությունների հանրային տնտեսությունը կհասնի զարգացման այնպիսի մակարդակի, երբ հնարավոր կդառնա նրա ռեսուրսների հաշվին լրիվ բավարարել կոլտնտեսականների պահանջմունքները։ Այդ հիման վրա անձնական օժանդակ տնտեսությունը աստիճանաբար տնտեսապես կկորցնի իր նշանակությունը։ Երբ կոլտնտեսությունների հանրային տնտեսությունը կարողանա լրիվ փոխարինել կոլտնտեսականների անձնական օժանդակ տնտեսությանը, երբ կոլտնտեսականներն իրենք համոզվեն, որ իրենց համար շահավետ չէ ունենալ տնամերձ տնտեսություն, նրանք կամավոր կերպով կհրաժարվեն դրանից» (ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը, էջ 505)։

Կոլտնտեսային կոոպերատիվ սեփականությունը համաժողովրդական սեփականության մակարդակին մոտեցնելու գործում մեծ դեր է խաղում միջկոլտնտեսային արտադրական կապերի զարգացումը։ Դրա անհրաժեշտությունը բխում է ժամանակակից արտադրողական ուժերի զարգացման պահանջներից, հողագործության մեջ արտադրության ավելի ու ավելի համակենտրոնացումից։

«Արտադրողական ուժերի աճման հետ միասին կզարգանան միջկոլտնտեսային արտադրական կապերը, տնտեսության հանրայնացման պրոցեսը դուրս կգա առանձին կոլտնտեսությունների շրջանակներից։ Հարկավոր է խրախուսել միջկոլտնտեսային ձեռնարկությունների և կուլտուր-կենցաղային հիմնարկների, պետական-կոլտնտեսային էլեկտրակայանների, գյուղատնտեսական մթերքների նախնական մշակման, պահպանման ու փոխադրման ձեռնարկությունների, շինարարության առանձին տեսակների, շինանյութերի, կոնստրուկցիաների արտադրության և այլ ձեռնարկությունների համատեղ կառուցման պրակտիկան» (ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը, էջ 505)։

Ընդհանուր ջանքերի այդպիսի միավորումը օգնում է կոլտնտեսություննե-



րին՝ լուծելու առանձին արտելների շրջանակներից դուրս եկող արտադրական ու հասարակական շատ կարևոր հարցեր։

ՍՄԿԿ XXI արտահերթ համագումարը և Կենտկոմի 1959 թվականի դեկտեմբերյան պլենումը ցույց տվեցին միջկոլտնտեսային արտադրական կապերի զարգացման ու ամրապնդման պրոգրեսիվ դերը, որոնք արագացնում են կոլտնտեսությունների հանրային տնտեսության վերելքը, նպաստում արտադրողական ուժերի և սոցիալիստական արտադրական հարաբերությունների զարգացմանը, տանում դեպի սոցիալիստական սեփականության երկու ձևերի մերձեցում։

Վերջին տարիներում բնորոշ է այն, որ Միության մեջ լայնորեն ծավալվել են միջկոլտնտեսային արտադրական կապերը. բոլոր ռեսպուբլիկաներում կազմակերպվել են միջկոլտնտեսային, կոոպերատիվ տարբեր նշանակություն ունեցող կազմակերպություններ։

Ռեսպուբլիկայի Գյուղատնտեսության մթերքների արտադրության և մթերումների մինիստրության, Գյուղատնտեսության էկոնոմիկայի և կազմակերպման հայկական գիտահետազոտական ինստիտուտի նախաձեռնությամբ, 1958 թվականին առաջին անգամ միջկոլտնտեսային խորհուրդ ստեղծվեց Արտաշատի շրջանում, իսկ հետագայում՝ Հոկտեմբերյանի, Շահումյանի, Էջմիածնի, Իջևանի և այլ շրջաններում։ Միջկոլտնտեսային խորհուրդների նպատակն է ստեղծել միջկոլտնտեսային ֆոնդեր և օգտագործել դրանք միջկոլտնտեսային կառուցումների համար։

Միջկոլտնտեսային կազմակերպությունների միջոցները գոյանում են կոոպերատիվ, փայատիրական սկզբունքներով։ Մուծվող փայի չափը նախնական շրջանում ճիշտ չէր սահմանված։ Որոշ կազմակերպություններում բոլոր փայատերերը մուծում էին հավասար գումար, անկախ տնտեսության մեջ ստացած համախառն արտադրանքից։ Կային կազմակերպություններ, որտեղ փայի չափը սահմանելիս ելակետ էին ընդունում ըստ տարվա սկզբում տնտեսության անբաժանելի ֆոնդի դրամական մասի, կամ ըստ կոլտնտեսություններին ամրացված ամբողջ հողատարածության յուրաքանչյուր հեկտարից ստացված դրամական միջոցների և կամ ըստ տնտեսության ցանքատարածությունների։

Կային նաև կազմակերպություններ, որտեղ փայի չափի սահմանման ժամանակ ելակետ էին ընդունում տնտեսության մեջ ստացված ամբողջ դրամական միջոցների գումարը և մասհանումներ կատարում։ Մեր կարծիքով այս ավելի նպատակահարմար է, քանի որ միջկոլտնտեսային կազմակերպությունների օբյեկտների կառուցումները մնում են որպես կոլտնտեսությունների սեփականություն՝ ապա ամենից ճիշտ կլինի տնտեսությունում ստեղծված ամբողջ դրամական միջոցների մուտքից որոշ մասհանումներ կատարել միջկոլտնտեսային խորհրդի ֆոնդին, ինչպիսին արվում է անբաժանելի ֆոնդերի համար։

Մասնակցության բաժնեմասերի չափը և մուծման ժամկետները որոշվում ու հաստատվում են միջկոլտնտեսային լիազորական ժողովի կողմից՝ ելնելով նախատեսված օբյեկտների կառուցման արժեքներից։ Մուծման չափերի հիմքում դնելով կոլտնտեսությունների դրամական միջոցների ամբողջ գումարը, տնտեսապես ուժեղները կմասնակցեն ավելի մեծ փայով, քան համեմատաբար թույլ կոլտնտեսությունները։

Որոշ տվյալներ ցույց են տալիս, որ 1957-ից մինչև 1959 թվականները

միջկոլտնտեսային կազմակերպությունների ու պետական ձեռնարկությունների փայական մուծումները ՍՍՌՄ-ի կոլտնտեսություններում ավելացել են միջին հաշվով 45,4 տոկոսով, ընդ որում՝ Էստոնական ռեսպուբլիկայում՝ 275, Մոլդավական ՍՍՌ-ում՝ 207, Վրացական ՍՍՌ-ում՝ 136, Ադրբեջանական ՍՍՌ-ում՝ 65, Թուրքմենական ՍՍՌ-ում՝ 181, Բելոռուսական ՍՍՌ-ում՝ 154 և Հայկական ՍՍՌ-ում՝ 71 տոկոսով: Միջկոլտնտեսային ֆոնդերը ամենից քիչ ավելացել են Ադրբեջանական և Հայկական ռեսպուբլիկաներում:

Բոլորովին այլ պատկեր են ներկայացնում ռեսպուբլիկայի տարբեր գոտիների շրջաններում ստեղծված միջկոլտնտեսային կազմակերպությունների ֆոնդերը: Օրինակ, Հոկտեմբերյանի շրջանի կոլտնտեսություններում այդ ֆոնդի գումարը 1958 թ. եղել է 59,2 հազար, իսկ 1960 թ. 531,6 հազար ռուբլի կամ ավելացել է 9 անգամ: Իջևանի շրջանում 1960 թ. 70 հազար ռուբլի կամ ավելացել է 1,4 անգամ:

ՍՍՌՄ կոլտնտեսությունների միջկոլտնտեսային կապիտալ ներդրումները 1959 թ., (1957 թ. համեմատությամբ) ավելացել են 62,3 տոկոսով: Միութենական ռեսպուբլիկաներում, Ղազախական ՍՍՌ-ում՝ 196, Բելոռուսական ՍՍՌ-ում՝ 150, Մոլդավական ՍՍՌ-ում՝ 142 տոկոսով, իսկ Հայկական ՍՍՌ-ում՝ աճել է 35,5 անգամ: Հայկական ՍՍՌ-ում աճի նվազությունը բացատրվում է 1957 թ. հատկացումների սակավությամբ:

Միջկոլտնտեսային կազմակերպությունների և պետական ձեռնարկությունների մեջ կապիտալ ներդրումների գումարը 1958 թ. Հոկտեմբերյանի շրջանում կազմել է 2 հազար, իսկ 1960 թ.՝ 137 հազար ռուբլի կամ ավելացել է 68,5 անգամ: Իջևանի շրջանում, այդ նույն ժամանակամիջոցում, ավելացել է 2,2 անգամ:

Միջկոլտնտեսային ֆոնդերի ստեղծման հետ միասին կարևորն այդ միջոցների տնտեսապես հիմնավորված օգտագործումն է: Ներդրումները պետք է լինեն ավելի արդյունավետ, ծախսվեն ամենից առաջ կարևոր նշանակություն ունեցող կառույցների վրա, որոնք խոշոր, պետական ձեռնարկությունների տիպի մեծածավալ ձեռնարկություններ են: Նրանք թեև կոոպերատիվ սեփականություն են, բայց արդեն համաժողովրդական օգտագործման բնույթ ունեն:

ՍՄԿՊ Ծրագրում ասված է. «Հանրային հարստության աճի համեմատ կոլտնտեսություններն ավելի ու ավելի մեծ չափով կմասնակցեն համաժողովրդական օգտագործման ձեռնարկությունների և կուլտուր-կենցաղային հիմնարկների, գիշերօթիկ դպրոցների, ակումբների, հիվանդանոցների, հանգստյան տների ստեղծմանը: Այս բոլոր պրոցեսները, որոնք պետք է տեղի ունենան կամավորության հիման վրա և տնտեսական անհրաժեշտ պայմանների առկայությամբ, կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականությանը հետզհետե համաժողովրդական բնույթ կտան» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 505):

Բանն այն է, որ միջկոլտնտեսային ձեռնարկությունների սեփականությունն այլևս չի ծառայում մեկ կոլտնտեսության շահերին, այլ մանր-խմբային սեփականությունից դառնում է խոշոր-խմբային սեփականություն, որտեղ դժվար չէ տեսնել համաժողովրդական սեփականության մի շարք ֆունկցիաներ: Այս դեպքում է, որ աշխատանքի ու արտադրության հանրայնացման աստիճանը սկսում է դուրս գալ առանձին կոլտնտեսությունների շրջանակներից և ընդգրկել մի շարք կոլտնտեսությունների կամ ամբողջ շրջանի կոլտնտեսությունների արտադրական ոլորտները:



Ձեռնարկությունների համատեղ կառուցումը օրգանապես միավորում է պետական ու կոլտնտեսային արտադրությունը, երկու սեկտորների արտադրական գործունեությունը:

Սոցիալիստական սեփականության երկու ձևերի մերձեցման մյուս ուղին գյուղատնտեսության մասսայական էլեկտրիֆիկացման, արտադրության մեքենայացման ու ավտոմատացման շնորհիվ հետզհետե տեղի ունեցող կոլտնտեսային արտադրության միջոցների յուրօրինակ միաձուլումն է պետական-համաժողովրդական արտադրամիջոցների հետ:

Ընթացիկ յոթնամյակի պլանային առաջադրանքների կատարումը վճռական էտապ կհանդիսանա երկրի համատարած էլեկտրիֆիկացման լենինյան գաղափարների կենսագործման ասպարեզում: 1959—1965 թվականների էլեկտրիֆիկացիայի զարգացման ասպարեզում գլխավոր ուղղությունը կլինի առավելապես ջերմային էլեկտրակայանների շինարարությունը, էլեկտրական ցանցերի ծավալումը և ՍՍՌՄ միասնական էներգետիկ սիստեմի ստեղծումը:

Կոլտնտեսային արտադրության միջոցները պետական-համաժողովրդական արտադրության միջոցների հետ ձուլելու համեմատ անհրաժեշտ է կոլտնտեսությունների և սովխոզների արտադրական կապերի ուժեղացում: Աստիճանաբար կստեղծվեն ագրարա-արդյունաբերական միավորումներ՝ գյուղատնտեսությունն օրգանապես զուգորդելով արտադրանքի արդյունաբերական վերամշակման հետ՝ այդ ձեռնարկությունների ռացիոնալ մասնագիտացմամբ և կոոպերացմամբ հանդերձ: Դա հնարավորություն կտա տարվա ընթացքում առավել հավասարաչափ ու լրիվ օգտագործել աշխատուժն ու արտադրական ռեսուրսները, բարձրացնել հանրային աշխատանքի արտադրողականությունը և բնակչության նյութական ու կուլտուրական մակարդակը:

Առաջիկա տարիներում կոլտնտեսային արտադրանքի իրացումն ավելի ու ավելի կկարգավորվի, աշխատանքի նորմավորումն ու վարձատրությունը կմոտենա պետական ձեռնարկություններում եղած մակարդակին ու ձևերին, անցում կկատարվի աշխատանքի ամենամսյա երաշխավորված վարձատրության և ավելի լայնորեն կզարգանա հասարակական սպասարկումը, կոլտնտեսային և պետական միջոցների հաշվին. կոլտնտեսականները լիովին կօգտվեն ճաշարանների, փռերի, լվացքատների, մանկամսուրների ու մանկապարտեզների, ակումբների, գրադարանների, ռադիոյի սպասարկումից, սոցիալական ապահովության բոլոր տեսակներից (կենսաթոշակներ, արձակուրդներ և այլն):

Սոցիալիստական սեփականության երկու ձևերի մերձեցման գործում ակտիվ դեր են խաղում նաև կոլտնտեսություններում կատարվող բաշխման ձևերի զարգացումն ու փոփոխությունները: Կոլտնտեսություններում բաշխման նոր ձևերի առաջացումն ու զարգացումը հետզհետե մոտենում են պետական-համաժողովրդական սեփականության մեջ գոյություն ունեցող բաշխման ձևերին (կոլտնտեսականների ավանսավորումը, նատուրալ վարձատրությունից դրամական վարձատրության անցնելը, առանձին կոլտնտեսություններում աշխօրի վերացումը և այլն):

Կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականությունը համաժողովրդական սեփականության մակարդակին հասցնելու համար անհրաժեշտ է ամրապնդել գյուղատնտեսության նյութատեխնիկական բազան, գյուղի աշխատավորների ֆիզիկական ու մտավոր ունակությունների բազմակողմանի զարգացմամբ: Այդ պրոցեսը կլինի տևական և անցում կկատարվի աստիճանաբար՝ արտադրողա-

կան ուժերի աճման և մթերքների առատության հասնելուն համապատասխան։

Այսպիսով, նշված առանձնահատկությունների կիրառման և հետևողական զարգացման շնորհիվ կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականությունը աստիճանաբար մերձենալու, իսկ հետագայում միաձուլվելու է պետական համաժողովրդական սեփականության հետ։

Կոլտնտեսային գյուղերը դառնալու են քաղաքատիպ բնակավայրեր, մեծ քաղաքների բնակչությունը ավելի ու ավելի է տարաբնակվելու գյուղական վայրերում, ստեղծվելու են քաղաք-արբանյակներ։ Մեր բոլոր բնակավայրերը ավելի ու ավելի են համապատասխանելու «կանաչ քաղաքների», «այգի քաղաքների» վերաբերյալ եղած պատկերացումներին. «...կզուգորդեն այն ամեն լավագույնը, ինչ ունի ժամանակակից քաղաքը՝ բարեկարգ բնակելի տներ, տրանսպորտային մայրուղիներ, կոմունալ-կենցաղային, մանկական կուլտուրական և սպորտային հիմնարկներ, այն ամեն լավագույնի հետ, ինչ ունեն գյուղական վայրերը՝ հարուստ կանաչ, ջրավազաններ, մաքուր օդ» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 225)։

Սոցիալիստական սեփականության երկու ձևերի միաձուլումը կազմակերպական տնտեսական հասարակ միջոցառում չէ, այլ քաղաքի և գյուղի էական տարբերությունների հաղթահարման հանրանշանակ արգասիք։

«Քաղաքի և գյուղի սոցիալ-տնտեսական և կուլտուր-կենցաղային տարբերությունների վերացումը կհանդիսանա կոմունիզմի կառուցման մեծագույն արդյունքներից մեկը» (ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 507)։

Ա. ՂՈՒԿԱՍՅԱՆ

## ԵՐՐՈՐԴ ԲՆԱԳԻԾԸ ԳՐԱՎՎԱԾ Է

Չորս տարի առաջ մեր գյուղատնտեսական արտելը իր յոթնամյա պլանը կազմելիս նշեց այն սահմանագիծը, որը գրավելու է 1965 թվականին։ Կոլտնտեսության վարչությունն ու պարտիական կազմակերպությունը որոշեցին ամեն ինչ անել հողը լավ մշակելու, գյուղատնտեսական մեքենաներն ու ռեզերվները արդյունավետ օգտագործելու, անասնաբուծության վիճակը բարելավելու, գյուղատնտեսական մթերքների արտադրությունը տարեցտարի ավելացնելու համար։ Մենք ձգտում ենք այնպես անել, որ արտադրության բոլոր ճյուղերը զարգանան համաչափ և լինեն շահութաբեր, անընդհատ աճի հանրային տնտեսությունը, կոլտնտեսականն իր գործադրած աշխատանքի դիմաց ստանա համապատասխան վարձատրություն՝ բարձր եկամուտ։

Կոլտնտեսության յոթնամյա պլանով նախատեսված է 1965 թվականին արտադրել բամբակի հումք՝ 450, բանջարեղեն՝ 720, խաղող՝ 750, միս՝ 63, կաթ՝ 351 տոննա, բուրդ՝ 27,5 ցենտներ, 286 հազար հատ ձու. յուրաքանչյուր հեկտարից ստանալ հացահատիկ՝ 22, եգիպտացորենի կանաչ մասսա՝ 330, առվույտ՝ 125 ցենտներ։

Արդեն չորս տարի է անցել յոթնամյակից։ Այդ տարիների մեր կոլտնտեսության գործունեության ամփոփումը ցույց է տալիս, որ արդյունքը վատ չէ։ Հանրային արտադրության մեջ կոլտնտեսականներն ու կոլտնտեսուհիները ցուցաբերում են ջանասիրություն, ձեռներեցություն, և յուրաքանչյուրը ձգտում է իր ազնիվ աշխատանքով տարեցտարի ավելացնել գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, հաջողությամբ կատարել պլանային առաջադրանքները։ Պարտիական կազմակերպությունը, գլխավորելով կոլտնտեսականների արտադրական ակտիվությունը, իր ողջ ջանքերն ուղղել է ՍՄԿՊ XXII համագումարի և պարտիայի Կենտկոմի պլենումների որոշումները կենսագործելու նպատակին։

Արտադրության մեջ արմատավորելով գիտության նվաճումները, առաջավորների փորձը, հողագործությունն ու անասնաբուծությունը վարելով պրոգրեսիվ ձևերով, տնտեսության բոլոր ճյուղերում մեր կոլտնտեսությունը գերակատարեց 1962 թվականի առաջադրանքները, իսկ գյուղատնտեսական մի շարք մթերքների արտադրությամբ հասավ յոթնամյակի վերջին տարվա համար սահմանված մակարդակին։ Անցյալ տարի կոլտնտեսությունն արտադրեց բամբակ՝ 446 (պլանային առաջադրանքը 420 տոննա), խաղող 876, բանջարեղեն՝ 758 տոննա, կամ միջին հաշվով բամբակենու յուրաքանչյուր հեկտարից ստացվել է 28 ցենտներ հումք, խաղողի այգիների յուրաքանչյուր հեկտարից՝ 160, բանջարեղենի ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից՝ 390 ցենտներ բերք։

Բուսաբուծության բնագավառում ձեռք բերված հաջողությունները գլխավորապես արդյունք են ագրոկանոնների ճիշտ կիրառման. հողին տրվում է անհրաժեշտ քանակությամբ տեղական և հանքային պարարտանյութ, հետևողական պայքար է մղվում գյուղատնտեսական կուլտուրաների հիվանդությունների ու վնասատուների դեմ։ Ցանքատարածությունները մշակվում են մեքենաներով։ Այսպես, անցյալ տարի բամբակենու ցանքի 60 տոկոսը կատարվեց քառակուսի բնային եղանակով, որը հնարավորություն տվեց զգալիորեն խնայելու մարդկային աշխատանքը, ավելի բարձր բերք ստանալու և իջեցնելու հումքի ինքնարժեքը։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեն և Սովետական կառավարությունը անցյալ տարի (հունիսին) մեր երկրի գյուղատնտեսության աշխատողներին ուղղված իրենց դիմումում խորհուրդ տվին կոլտնտեսություններում ու սովխոզներում մշակել մսի, կաթի, անասնաբուծական մյուս մթերքների արտադրությունն ավելացնելու կոնկրետ պլան, հաշվի առնելով եղած հնարավորություններն ու ռեզերվները։ Գիտակցելով այդ գործի կարևորությունն ու լրջությունը, մեր կոլտնտեսության վարչությունը և պարտիական կազմակերպությունը վերանայեցին անասնապահության զարգացման յոթնամյա պլանը։

Անասնապահության զարգացման հիմքը կերի կայուն ու էժան բազայի ստեղծումն է և աշխատատար պրոցեսների մեքենայացումը։ Այդ մասին գյուղատնտեսության աշխատողներին ուղղված դիմումում ճշմարտացիորեն ասված էր. «Եթե կեր լինի, կլինեն նաև անասուններ, կլինեն նաև միս ու կաթ, բուրդ ու ձու»։ Կերի կայուն բազա ստեղծելու նպատակով մենք հատուկ ուշադրություն հատկացրինք եգիպտացորենի մշակությանը. ցանքատարածության ընդարձակման հետ միասին մեքենայացրինք մի շարք աշխատատար պրոցեսներ։ Մեր կոլտնտեսության հողակլիմայական պայմաններում պակաս արդյունավետ չէ առվույտը, որի ցանքատարածությունները խնամքով մշակելու դեպքում հիանալի բերք է ստացվում։ Կոլտնտեսականների ջանքերն ապարդյուն չանցան. անցյալ տարի յուրաքանչյուր հեկտարից ստացանք մոտ 400 ցենտներ եգիպտացորենի կանաչ մասսա և 140 ցենտներ առվույտ, իսկ Անուշ

Աբգարյանի օղակը իր մշակած եգիպտացորենի ցանքատարածության ամեն մի հեկտարից ստացավ 500 ցենտներ կանաչ մասսա։

Անցյալ տարի կովանոցում անցկացրինք ավտոխմոցներ, սարքեցինք հարմարանքներ գոմերից աղբը դուրս տանելու և անասունների կերը մանրացնելու համար։

Մեր պայմանները հնարավորություն են ընձեռում թռչնաբուծության, (հատկապես հնդկահավի) զարգացման համար, որը մսի արտադրությունն ավելացնելու լավագույն աղբյուր է։ Այդ նպատակով վերջին չորս տարում մենք յուրացրինք 50 հեկտար աղուտային հողեր և գլխավորապես ցանեցինք կերային կուլտուրաներ։ Ամառն ու վաղ աշնանը հնդկահավերին դուրս բերեցինք Սև ջրի ափի արոտավայրը, եղեգնով ու ճիմով պատրաստեցինք թռչնանոցներ, որն աննշան ծախսեր պահանջեց։ Տարվա ընթացքում 3500 ճտից պահպանվեցին ու աճեցին 3100-ը, որոնց յուրաքանչյուրի քաշը հինգ ամսեկան հասակում հինգ կիլոգրամ էր։ Հնդկահավի մսի յուրաքանչյուր կիլոգրամի ինքնարժեքը եղավ մեկ ռուբլի։ Այս գործում մեր կոլտնտեսությանը մեծ աջակցություն ցույց տվեց ռեսպուբլիկայի Գյուղատնտեսության մթերքների արտադրության ու մթերումների մինիստրության թռչնաբուծության մասնագետ՝ Լ. Գրիգորյանը։

Անասնաբուծության զարգացման ասպարեզում մեր գործադրած ջանքերը և կատարած նյութական ծախսերը լավ արդյունք տվին։ Անցյալ տարի կոլտնտեսությունն արտադրեց 97,5 տոննա միս, որից մոտ 30 տոննան թռչունի (հավի և հնդկահավի), կաթ՝ 232,5 տոննա, բուրդ՝ 29,5 ցենտներ, ձու՝ 335 հազար հատ։ Մսի արտադրության ասպարեզում մեր կոլտնտեսությունը գրավել է պարտիայի և կառավարության կողմից սահմանված երրորդ բնագիծը՝ յուրաքանչյուր 100 հեկտար վարելահողի դիմաց արտադրել է 160 ցենտներ միս (սպանդանոցային քաշով)։

Անասնաբուծական և բուսաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու հետ միասին կոլտնտեսությունը պատվով է կատարում նաև դրանք պետությանը վաճառելու իր ստանձնած պարտավորությունը։ Անցյալ տարի պետությանը մթերքներ վաճառելու առաջադրանքները կատարվել են՝ մսինը՝ 175, կաթինը՝ 104, բրդինը՝ 120, ձվինը՝ 200, խաղողինը՝ 163, բամբակինը՝ 106, բանջարեղենինը՝ 130, շերամինը՝ 180 տոկոսով։

Գուցե ընթերցողն ինձ հարց տա՝ թերևս անասնաբուծական մթերքների վաճառքի այդպիսի մեծ աճը կատարվել է հանրային անասունների և թռչունների գլխաքանակի նվազմա՞ն հաշվին։ Երբեք։ Յոթնամյակի առաջին իսկ տարվանից մեր կոլտնտեսությունում սեփական հոտի վերարտադրության հաշվին ավելացել է անասունների ու թռչունների գլխաքանակը։ Այսպես, 1959 թվականի 301 խոշոր եղջերավոր, 890 մանր եղջերավոր, 130 խոզի, 1121 թռչունի դիմաց անցյալ տարի մեր ֆերմաներում հաշվվում էր 315 խոշոր եղջերավոր, 1100 մանր եղջերավոր անասուն, 250 խոզ, շուրջ 4600 թռչուն, կովերի գլխաքանակն այդ ժամանակաշրջանում 93-ից հասել է 106-ի։ Անասնաբուծության բնագավառում ձեռք բերված այս հաջողությունների մեջ իր նշանակալի բաժինն ունի զոոտեխնիկ, պարտկազմակերպության քարտուղար ընկ. Գառնիկ Դանղյանը։

Մեզ մոտ ամեն ինչ արվում է անասունների և թռչունների ցեղը բարելավելու համար, կատարվում է արհեստական սերմնավորում, բտում են մսացու անասուններին. եթե անցյալներում վաճառվող խոշոր եղջերավոր անասուն-



ներից յուրաքանչյուրի կենդանի քաշը 120—150 կիլոգրամ էր, խոզինը՝ 60—70, ոչխարինը՝ 35—40, ապա այժմ համապատասխանորեն հասնում է 200—220, 100 և 45—50 կիլոգրամի։

Գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու կարևորագույն լծակներից է այդ բնագավառում աշխատողների նյութական շահագրգռվածության բարձրացումը։ Մոտիկ անցյալում, մեզ մոտ կոլտնտեսականը յուրաքանչյուր աշխօրի դիմաց ստանում էր տասը-տասնհինգ (հին դրամով) ռուբլի։ Պարզ է, որ այդ նրան այնքան էլ չէր շահագրգռում։ Կոլտնտեսության վարչությունն ու պարտիական կազմակերպությունը անհրաժեշտ համարեցին փոխել վարձատրության գոյություն ունեցող սիստեմը և կիրառել պարգև հավելումների սկզբունքը։ Այժմ անասնապահության բնագավառում աշխատողներից՝ հորթապահները պլանից ավելի ստացած և մինչև 6 ամսականը անկորուստ պահպանած հորթերի 10 տոկոսը կամ նրանց արժեքը ստանում են որպես պարգև հավելում։ Անցյալ տարի բամբակագործության բնագավառում աշխատողներին իբրև պարգև հավելում տրվել է պլանից ավելի արտադրված հումքի արժեքի 10 տոկոսը, իսկ այգեգործները պլանից ավելի արտադրած խաղողի համար ստացել են յոթ հազար ռուբլի։

Վարձատրության այս սիստեմը շահագրգռում է կոլտնտեսականներին ու կոլտնտեսուհիներին՝ ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ արտադրելու։ Այսպես, Հակոբ Խաչատրյանի այգեգործական բրիգադան անցյալ տարի միջին հաշվով ամեն մի հեկտարից ստացավ 186 ցենտներ բերք։ Իվան Բայրամյանի բրիգադան՝ ավելի քան 400 ցենտներ բանջարեղեն, թռչնաբույծ Աղասի Թևանյանն իր խնամած յուրաքանչյուր հավից ստացավ 125 ձու, կթվորուհի Ղարե Խալիլյանը ամեն մի կովից՝ 2300 լիտր կաթ, իսկ խոզաբույծ Վարդան Միսակյանը յուրաքանչյուր մայր խոզից՝ 23 խոճկոր։ Լավ արդյունքի հասան բամբակագործության բնագավառում աշխատող Իվան Գաբրիելյանի և Սահակ Գրիգորյանի բրիգադաները։

Գյուղատնտեսական մթերքների արտադրության վերելքը մեծ չափով նպաստել է արտելի հանրային ֆոնդի և կոլտնտեսականների եկամտի աճմանը։ Կոլտնտեսության ընդհանուր եկամուտը 1955 թվականին եղել է 150 հազար, 1958 թվականին՝ 200 հազար, իսկ անցյալ տարի՝ 510 հազար ռուբլի։ Կոլտնտեսականներին յուրաքանչյուր աշխօրի դիմաց 1955 թվականին բաշխվել է մեկ, 1958 թվականին երկու, իսկ անցյալ տարի չորս և կես ռուբլի (նոր դրամով)։

Հանրային տնտեսության աճի հիման վրա կոլտնտեսականների բարձր եկամուտը նրանց հնարավորություն է տվել վարելու բարեկեցիկ ու կուլտուրական կյանք։ Անցած չորս տարում կոլտնտեսականների մեծ մասը կառուցել է նոր բնակարաններ։ Կոլտնտեսության միջոցներով կառուցվել է դպրոցի նոր շենք իր բոլոր հարմարություններով, բաղնիք, աղբյուր-հուշարձան, իսկ դպրոցի հին շենքը վերակառուցվել է. այնտեղ այժմ տեղավորված են բուժարանը, մանկապարտեզն ու մանկամսուրը։

Շուկայական գներից շատ ցածր գնով կոլտնտեսությունը գյուղատնտեսական արտելի անդամներին վաճառում է կաթ, միս, ձու, բանջարեղեն ու միրգ, որը շահագրգռում է կոլտնտեսականներին՝ ավելի ջանասիրաբար ու ազնվորեն աշխատելու արտադրության մեջ և հարստացնելու հանրային տնտեսությունը։

Ինչպես ողջ սովետական գյուղացիությունը, այնպես էլ մեր գյուղի կոլտն-

տեսականները, ոգեշնչված Նոյեմբերյան պլենումի որոշումներով, ծավալել են սոցիալիստական մրցություն գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու համար։ Այս տարի յուրացնելու ենք 15 հեկտար նոր հողեր, գլխավորապես կերի կուլտուրաներ ցանելու համար. կովաբուծական ֆերմայում սարքավորելու ենք կթի ագրեգատր, հնդկահավերի գլխաքանակը հասցնելու ենք տասը հազարի, կառուցելու ենք երկու հեկտար տարածությամբ ջրավազան, որը միացնելու ենք Սև ջուր գետի հետ՝ ձկնաբուծությունը զարգացնելու նպատակով։ Մեր կատարած հաշվարկումները ցույց են տալիս, որ այդ լճակից կարող ենք տարեկան վեցից-ութ տոննա ձուկ որսալ։ Կոլտնտեսությունը պարտավորվել է 1963 թվականին ստանալ 1100 ցենտներ միս, կամ յուրաքանչյուր 100 հեկտար վարելահողի դիմաց՝ 170 ցենտներ (սպանդանոցային քաշով)։ Անցյալ տարվա համեմատությամբ կաթի արտադրությունն ավելացել է 15, բամբակինը՝ 10, ձվինը՝ 20 տոկոսով։

Վերին քյոլանլեցիները այսուհետև էլ ազնվորեն կաշխատեն և իրենց բոլոր ջանքերը կգործադրեն՝ պատվով կատարելու ստանձնած պարտավորությունները։

Խ. ՍԻՄՈՆՅԱՆ
Էջմիածնի Վերին Քյոլանլու գյուղի
կոլտնտեսության նախագահ

Սովետական Միությունում տարեցտարի ավելանում է տրակտորների, ավտոմեքենաների և գյուղատնտեսական այլ մեքենաների ու գործիքների քանակը: Անցյալ տարվա հոկտեմբերի սկզբներին, 1961 թվականի համեմատությամբ, երկրի կոլտնտեսություններն ու սովխոզները ավելի են գնել 15800 տրակտոր (ֆիզիկական միավոր), 11500 հասկավոր կուլտուրաների կոմբայն: Ընդհանրապես, նախորդ տարվա համեմատությամբ, ավելի է գնված 233 միլիոն 700 հազար ռուբլու գյուղատնտեսական տեխնիկա ու մեքենաներ:

## ԱԹԵԻՍՏԻ ԱՄԲԻՈՆ

# ԿՐՈՆԱԿԱՆ ՀԱՎԱՏԱԼԻՔՆԵՐԻ ԾԱԳՈՒՄԸ

Վ. Ն. ԴԱՐԲԻՆՅԱՆ

Երկյուղն է աստվածներ ստեղծել

Կրոնը հավատ է «գերբնական» ուժերի և աստծու նկատմամբ և լինելով հասարակական երևույթ, առաջացել ու ձևավորվել է հասարակական կյանքում։ Սակայն կրոնական քարոզիչները և իդեալիստ տեսաբանները հավատացնում են, որ կրոնը «բնաբուխ զգացմունք է», մարդուց և նրա գիտակցությունից անխզելի մի երևույթ։ Նրանց կարծիքով մարդը նրանով է տարբերվում կենդանական աշխարհից, որ նա հավատում է աստծուն։ Եվ իբր այդ հավատը գոյություն է ունեցել դեռևս այն պահից, երբ առաջացել է մարդը, և որ այն մարդուն տրվել է մեկընդմիշտ՝ աստվածային զորության շնորհիվ։ Սակայն մարդկային հասարակության պատմության բազմահարուստ տվյալներն այլ բան են ասում։

Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ մարդկային կյանքի պատմությունն սկսվել է առանց կրոնի և նույնիսկ ժամանակակից առավել քիչ զարգացած ժողովուրդների պատկերացումները «գերբնական» երևույթների մասին հեռու են «առաջադեմ» կրոնավորների աստվածային ուժերի նկատմամբ ունեցած պատկերացումներից։ Գիտությունը պարզել է, որ պիտեկանտրոպը, որն ավելի քան մեկ միլիոն տարի առաջ է ապրել, կամ սինանտրոպը, թեկուզ և հայդելբերգյան մարդը, որն ապրել է 500 հազար տարի մեզանից առաջ, ոչ մի կրոնական պատկերացում չեն ունեցել։ Այդ են հաստատում նրանց բրածո մնացորդների պալեոնտոլոգիական (հնագույն օրգանիզմներն ուսումնասիրող), արխեոլոգիական (հնէաբանության) ուսումնասիրությունները։ Սակայն ոչ միայն կապկանման մարդկանց մոտ, այլև հնագույն մարդկանց՝ նեանդերթալյան մարդու և կրոմանյոնյան* մարդու մոտ նույնպես չեն եղել կրոնական պատկերացումներ, չնայած կապկանման մարդկանց համեմատությամբ նրանք ավելի զարգացած էին, և նրանց մոտ առաջ էին եկել բաժանահնչյուն խոսքի սաղմերը։

Պալեոնտոլոգիան հաստատում է, որ կրոնական հավատալիքների առաջին նշանները հայտաբերվել են մեզնից 100 հազար տարի առաջ ընկած ժամանակաշրջանում (այն սկիզբ է առել կայնոզոյան նոր էրայի երրորդական շրջանում՝ մեզնից ավելի քան մեկ միլիոն տարի առաջ), մոտ 900 հազար տարի մեր նախնիներն ապրել են առանց որևէ կրոնական հավատալիքի և միայն 100 հազար տարի է, ինչ մարդկային հասարակությունը կրոնական հավատալիքներ ունի։

* Նախամարդկանց, բրածո մարդկանց տիպեր, որոնք կազմում են անցման շրջան՝ կապկանման մարդուց դեպի ժամանակակից մարդը։

Դիալեկտիկական մատերիալիզմի ուսմունքը բնության և հասարակության զարգացման մասին հաստատում է կյանքի էվոլյուցիոն զարգացումը, ըստ որի՝ ինչպես օրգանական կյանքը, այնպես էլ հասարակական երևույթներն անցել են աստիճանական զարգացման պատմական երկարատև պրոցես և միանգամից չէ, որ դարձել են այնպիսին, ինչպիսին նրանք այժմ կան։ Մարդը ևս իր կազմվածքով և գիտակցությամբ այնպիսին չի եղել, ինչպիսին հիմա է։ Նա բոլորովին էլ չի առաջացել աստվածային ուժերի շնորհիվ, Եվայից ու Ադամից։ Մարդն առաջացել է օրգանական աշխարհի էվոլյուցիոն զարգացման հետևանքով մեր մոլորակի վրա էոզոյան (հնագույն) դարաշրջանում ձևավորված առաջին սպիտակուցային մարմինների՝ կոացերվատների (նախնական կուտակումների) հետագա զարգացման շնորհիվ, որոնցից սկզբում առաջացան ավելի պարզագույն միաբջիջ օրգանիզմներ և որոնց աստիճանական զարգացումը ծնեց ավելի ու ավելի բարձրակարգ օրգանիզմներ և, վերջապես, մարդուն։

Մարդը ծագել է մարդանման կապիկներից աշխատանքի պրոցեսում, աշխատանքային գործիքների արտադրության, գոյության ահեղ պայքարում, էվոլյուցիոն զարգացման շնորհիվ։ «Աշխատանքն է ստեղծել մարդուն», հանճարեղ կերպով մատնանշել է Էնգելսը։

Իր գոյության սկզբնական շրջանում, բնության երևույթները չհասկացող, էլեմենտար գիտակցության տեր մարդը չէր կարող ունենալ կրոնական և ոչ մի զգացում, նույնիսկ հասարակ կրոնական պատկերացում։ Չէ՞ որ դրա համար անհրաժեշտ էր ունենալ վերացական մտածողության կարողություն։ Չէ՞ որ կրոնը, վերջին հաշվով, ֆանտաստիկ պատկերացումների և հասկացողությունների մի յուրահատուկ և որոշակի կոմպլեքս է։ Որպեսզի մարդկային ուղեղը կարողանար ունենալ թեկուզ և չնչին, թեկուզ և ամենաաննշան կրոնական պատկերացումներ, մարդը պետք է ունենար որոշակի մակարդակով վերացական մտածողության ունակ ուղեղ, որոշակի զարգացման հասած ներվային սիստեմ։ Բայց վաղ նախնադարյան մարդու ուղեղը դեռ շատ քիչ բանով էր տարբերվում մարդանման կապիկների ուղեղից, այն դեռ չուներ զարգացման ժամանակակից մակարդակը և չէր էլ կարող ունենալ։ Մարդու ուղեղը զարգացել է աստիճանաբար։

Հնդկական մի լեգենդ պատմում է այն մասին, որ Ջելալ-ուդ-Դին Աքբարը, ցանկանալով իմանալ, թե ինչ լեզվով են խոսել «առաջին մարդիկ», հրաման է տվել, ծնվելուց անմիջապես հետո 12 երեխա առանձնացնել և փակել մի աշտարակի մեջ։ Ապա նրանց խնամքը նա հանձնարարում է համր ծծմայրերի։ 12 տարի հետո փոքրիկ բանտարկյալներին բերում են ռաջայի մոտ, որտեղ հավաքված էին բազմաթիվ հյուրեր՝ պարսիկներ, հնդիկներ, արաբներ, խալդեր և ուրիշներ։ Նրանք եկել էին, որպեսզի ամեն մեկն իր «սուրբ գրքի» հիման վրա ապացուցի, որ այդ երեխաները պետք է խոսեն հենց իրենց լեզվով։ Բայց ի հիասթափություն բոլորի, ոչ մի խոսք։ Դժբախտ մանուկներն իրենց ցանկություններն արտահայտում էին անհասկանալի հնչյունների, ճիչերի, դեմքի ու մարմնի յուրահատուկ շարժումների միջոցով։ Այս լեգենդը ևս հաստատում է գիտական այն թեզը, որ մարդկանց մոտ չկա բնատուր լեզու, չկան և չեն էլ կարող լինել բնածին գաղափարներ։ Ուրեմն, ոչ թե «սուրբ գրքերն» են ամենազոր, այլ բնությունը՝ բնության և հասարակության զարգացման օբյեկտիվ օրենքները, և որ կրոնը մշտնջենական չէ, որ մարդկային հասարակության պատմության մեջ ծագել և ոչնչացել են շատ կրոններ։



Կրոնական պատրանքներն առաջին անգամ երևան եկան նախնադարյան հասարակության տոհմատիրական կարգերում։ Ի հակադրություն անգլիացի գիտնական Էդվարդ Թեյլորի և ֆրանսիացի Լևի-Բրյուլի, սովետական գիտնականները (հատկապես Անիսիմովը և Ցրանցևը) ամենանախնական կրոնական պատկերացումների առաջացումը կապում են նախնադարյան մարդու աշխատանքային գործունեության հետ։ Մարդն անզոր էր բնության ուժերի առաջ։ Նրա ողջ կյանքը, հաջողությունն ամբողջությամբ կախված էին քմահաճ բնության ահռելի ուժերից։ Քարանձավներում, բաց երկնքի տակ և հազար ու մի արհավիրքներով, ամեհի գազաններով լի կուսական անտառների ծառերի վրա գիշերող վայրենի մարդը ոչ մի միջոց չուներ բնության տարերային ուժերից պաշտպանվելու համար։ Մարդու անբաժան ուղեկիցներն էին՝ ահն ու սարսափը, սովը, ցուրտը, գիշատիչ գազանները, հիվանդությունները. վաղաժամ և աղետալի մահը հետապնդում էին նախամարդուն ամեն քայլափոխում։ Մշտական անօգնական վիճակում, գոյության կռվի ահեղ պայքարում, բնության հզոր և անհասկանալի ուժերի հանդեպ ունեցած վախը ճնշում էր նախնադարյան մարդուն, թունավորում նրա միտքը, նրա մեջ անխուսափելիորեն ծնում պատկերացումներ, որ բնության մեջ թագավորում են այնպիսի ուժեր, որոնք անհասկանալի, անըմբռնելի են իր գիտակցության համար։ Այն, ինչ հասկանալի չէր մեր նախահայրերի թույլ զարգացած գիտակցությանը, պատկերացվում էր իբրև անհասանելի, ինչ-որ վերուստ տրված մի բան՝ «հրաշք»։ Ամենուրեք բնության ուժերը նրան ներկայանում էին իբրև թշնամի, «խորհրդավոր» ուժեր ու երևույթներ, և նա սկսում էր խորհել նրանց մասին՝ մերթ սարսափով, մերթ ակնածանքով, մերթ հայեցողական գունեղ ենթադրություններով։

Նախնադարյան մարդը համառ պայքար է մղել իր գոյության համար։ Հենց գոյության այդ պայքարն է ստիպել նրան գործիքներ պատրաստել՝ գազաններից պաշտպանվելու, որսի, բնության բարիքներից օգտվելու համար։ Բայց, այդ բոլորով հանդերձ, ոչ թե մարդն էր իշխում բնության վրա, այլ բնության տարերային ուժերն էին իշխում մարդու վրա։ Եվ ահա բնության տարերքի դեմ մղած ահեղ պայքարում վայրենու տգիտությունն է ստիպել նրան բնության երևույթների մեջ խորհրդավոր և աստվածային ուժեր տեսնել,— այս միտքն է արտահայտել Լենինը կրոնական հավատալիքների ծագման պատճառները վերլուծելիս։ Սկզբում մարդիկ բնության երևույթների և առարկաների մեջ տեսնում էին գիտակցություն, կամք, ուժ և իշխանություն ունեցող հատուկ էակներ։ Եվ իրենց մտքի ստեղծած այդ խորհրդավոր էակները մարդկանց գիտակցության մեջ հետզհետե առանձնացան բնության երևույթներից ու առարկաներից, սկսեցին երևալ բնությանն ու մարդկային հասարակությանը ղեկավարող «ամենազոր ուժերի»՝ աստվածների տեսքով։ Հենց այդ ժամանակ էլ մարդն սկսեց աշխարհը բաժանել մարմնական և հոգևոր երևույթների։ Նախնադարյան մարդուն թվում էր, թե ամբողջ բնությունը բնակեցված է բազմաթիվ ոգիներով ու աստվածներով։ Նա կարծում էր, թե ոգիները կան ամենուր՝ հողում, օդում, կրակի, ջրի, ծառի մեջ և այլուր։ Նախնադարյան մարդը երկյուղածությամբ էր նայում ամեն ինչի. նա խոնարհվում էր ոչ թե աստծու առջև՝ ներկայիս պատկերացմամբ, այլ բնության ամեն մի երևույթի՝ կայծակի, որոտի, քամու, արևի, նույնիսկ ծառի, այս կամ այն կենդանու առջև։

Առաջին հարցերից մեկը, որի հետ բախվեց նախնադարյան մարդը, դա

կյանքի ու մահվան հարցն էր։ Մահը նրան սպառնում էր յուրաքանչյուր քայլափոխում, ազդում նրա գիտակցության վրա։ Նախնադարյան կյանքի այդ շրջանում վայրենու համար դեռևս այդ երևույթն անհասկանալի էր։ Եվ, քանի որ մահից հետո մարդկային մարմինը անկենդան էր դառնում և արագ քայքայվում, ուստի նախնադարյան մարդն ստիճանաբար հանգեց այն եզրակացության, որ կյանքի կրողը մարմինը չէ, այլ ինչ-որ ուրիշ, անմատչելի մի բան։ Նրա այդ պատկերացումն ամրապնդվեց նաև այնպիսի երևույթների առեղծվածային բնույթով, ինչպիսին է երազը։ Հաճախ նրանք երազում տեսնում են իրենց մահացած բարեկամներին, տոհմակիցներին, խոսում նրանց հետ, որսի գնում միասին։ Դա նախնադարյան մարդու գիտակցությամբ ընկալվում էր այնպես, որ իբր քնած մարդու կամ մահացածի հոգին դուրս է գալիս նրա մարմնից և ճանապարհորդում է, թե երբեմնի մահացած նախնիների հոգիները գալիս են իրենց սերունդներին տեսնելու, նրանց մասին հոգալու։ Հիվանդության, մահի, գոյության պայքարի բոլոր դժվարություններն ու սարսափներն իրենց ազդեցությունն էին թողնում նախնադարյան մարդու պրիմիտիվ գիտակցության վրա։ Եվ հզոր գերբնական ուժերի, ոգիների ու հոգու անմահության մասին նախնադարյան մարդու հավատը ծագեց ո՛չ միայն նրանց տգիտությունից, այլև գոյության պայքարում նրանց կրած տառապանքներից ու դժվարություններից։ Այսպիսով, մարդկանց մոտ սխալ հասկացություն է առաջանում իբրև, առարկաների մեջ չեղած հավիտենական, անմահ հոգու և անհետացող, քայքայվող, ոչնչացող, ժամանակավորապես գոյություն ունեցող մարմնի մասին։

Անցնելով «հոգու անմահության» հարցին, մենք թևակոխում ենք սնոտիապաշտության այն բնագավառը, որը, որոշ չափով, բոլոր միստիկական և դուալիստական պատկերացումների միջնաբերդն է։ Այստեղ ավելի շատ, քան մեկ ուրիշ հարցում, փիլիսոփայական պատկերացումներին խառնվում է նաև մարդկային էգոիզմը, որն ամեն կերպ ձգտում է ապահովել իր կյանքի գոյությունը մահից հետո ևս։ Եվ, քանի որ հոգու այդ բարձրագույն պահանջը շատ հզոր է, իսկ նախնադարյան մարդու գիտակցությունը՝ պրիմիտիվ, ուստի դադարում է մարդու կողմից կյանքի երևույթների քննադատական ընկալումը։ Գիտակցաբար թե անգիտակցաբար մարդկանց մեծամասնության մեջ, բոլոր մնացած ընդհանուր հայացքները, հետևապես և ամբողջ աշխարհայացքը, գտնվում են մարդու անմահության ֆանտաստիկ գաղափարների ազդեցության ներքո։

«Հոգու անմահության» այդ պահանջը մարդու մոտ ամրապնդվել, դրսևորվել է երկու պատճառով։ Նախ՝ դրանով նա գիտակցաբար իրեն հույս է ներշնչում ավելի լավ և հավիտենական կյանք վայելելու հանդերձյալ աշխարհում և երկրորդ, այնտեղ տեսնելու իր մերձավոր ազգականներին ու բարեկամներին, որոնք վաղուց արդեն մահացել են։ Առաջին դեպքում գործն առնչվում է բանական պահանջը բավարարելու ցանկության հետ և երկրային կյանքում կրած զրկանքների դիմաց մարդը ձգտում է հավիտենական, հաճելի և երջանիկ կյանքի՝ այն պատկերացնելով անդրշիրիմյան դրախտային կյանքի ձևով։ Երկրորդ դեպքում մարդը ցանկանում է սփոփել իր սիրո և կարոտի զգացմունքները հանդեպ մտերիմների և հարազատների, որոնք հեռացել են երկրային կյանքից։

Մի րոպե, միայն մի րոպե պատկերացրեք մեր նախնիներին՝ այդ երականքից զուրկ և նրանց հասկացրեք այն դառը ճշմարտությունը, որ նա ճնշված



ու զրկանքներով ապրեց իր երկրային կյանքը, կմեռնի և այսպես էլ մեկընդմիշտ կզրկվի հրաշալիքներով լի բնության սքանչելի տաճարի կյանքի վայելքներից օգտվելու հնարավորությունից։ Մարդը երբեք չի հաշտվում այն մտքի հետ, որ մահից հետո ինքն այլևս երբեք կյանքը, աշխարհը չի տեսնելու։ Բարձր բանականության հասած մարդու մոտ անգամ մի ինչ-որ հույս, ինչ-որ մի աղոտ ցոլք գուրգուրում է նրա անմահության էգոիստական զգացումը։ Մարդկանց մեծամասնության պատկերացումը «հանդերձյալ» կյանքի և երկնային անմահության մասին տարօրինակ է և խիստ զարմանալի հենց նրանով, որ «աննյութական հոգին» օժտված է չափազանց նյութական հաճույքներ վայելելու ընդունակությամբ։ Հենց այստեղից էլ կարելի է անել այն հետևությունը, որ աննյութական, գերբնական ոչինչ չկա, որ դրանք մարդկային մտքի ֆանտաստիկ ստեղծագործություններ են, որոնք ծագել են դժվարին կյանքից ելք որոնելու նրա ճանապարհին։ Աֆրիկայի կրոնապաշտ նեգրը հույս ունի դրախտում գտնելու իր նախնիների դարավոր երազանքը՝ ազատությունը, վայելելու աֆրիկյան փարթամ բնության բարիքները, էսկիմոսը հույս ունի գտնել հավերժական սպիտակափառ սառցադաշտեր՝ անհամար սպիտակ արջերով, փոկերով և այլ կենդանիներով. Թուրք մահմեդականը երազում է երկնային հավերժական կյանք վայելել ծաղկափթիթ պարտեզների, սառնորակ աղբյուրների, հրաշագեղ ու սևաչյա աղջիկների կուսական գրկում. խիզախ մեքսիկացին ակնկալում է դրախտում գտնել ամենահրաշալի որսորդական վայրեր, վայրի ձիերի հսկա երամակներ, շոտլանդացի եկեղեցականն այն աշխարհում ցանկանում է տեսնել հսկայական գոթական տաճարներ, որտեղ պիտի հավերժորեն փառաբանվի ուժերի աստվածը։ Մի խոսքով, ինչպես Շիլլերն է ասել, յուրաքանչյուր հավատացյալ մարդ «անդրշիրիմյան» երանելի կյանքը պատկերացնում է իր երևակայության, իր ցանկության համաձայն, որպես երկրային կյանքի երկնային շարունակություն։

Հոգու անմահության և «հանդերձյալ կյանքի» միստիկական պատկերացումները մարդկանց մոտ առաջացել են պոլիֆիլետիկ կերպով (բազում նախնիներից են ծագել)։ «Լյուդվիգ Ֆոյերբախը և գերմանական կլասիկ փիլիսոփայության վախճանը» աշխատության մեջ Ֆ. Էնգելսը գրել է. «Արդեն իսկ այդ հեռավոր ժամանակներից սկսած, երբ մարդիկ, տակավին չունենալով ոչ մի գաղափար իրենց մարմնի կազմվածքի մասին և չկարողանալով բացատրել երազները, եկան այն պատկերացման, թե նրանց մտածողությունն ու զգայությունները նրանց մարմնի գործունեությունը չեն, այլ ինչ-որ հատուկ նախասկիզբը-հոգու, որ ապրում է այդ մարմնում և նրան թողնում մահվան ժամանակ,— արդեն այդ ժամանակից սկսած նրանք պետք է խորհրդածեին այդ հոգու արտաքին աշխարհի հետ ունեցած հարաբերության մասին։ Եթե այդ հոգին մահվան մոմենտին անջատվում է մարմնից և շարունակում է ապրել, ապա ոչ մի առիթ չկա նրա համար ինչ-որ մի առանձին մահ հնարելու։ Այսպես ծագեց հոգու անմահության պատկերացումը, անմահություն, որը զարգացման այն աստիճանում չէր պարունակում իր մեջ մի մխիթարական բան, որը թվում էր մի անհաղթահարելի ճակատագիր և շատ հաճախ, օրինակ հույների մոտ, համարվում էր մի իսկական դժբախտություն» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 2, էջ 472)։

Դրա վառ ապացույցն է այն հանգամանքը, որ նույնիսկ այժմ, դեռևս Ամերիկայում ապրող քիչ զարգացած հնդիկների և այլ կիսավայրենի ցեղերի

մոտ անիմիստ պաշտամունքը՝ հոգու անմահության գաղափարը, զարգացած չէ։ Միայն բանականության զարգացման, կյանքի ու մահվան, քնի և երազների վերաբերյալ խորհրդածելու հետևանքով է, որ մարդկության զանազան հնագույն ցեղերի մեջ, իրարից անկախ, սկսել են զարգանալ միստիկական պատկերացումներ մեր օրգանիզմի դուալիստական կառուցվածքի մասին։ Այդ պրոցեսում իրենց ուրույն դերն են խաղացել նաև բազմաթիվ այլ հանգամանքներ՝ մեծերի պատմածը, ազգականների կարոտը, կյանքը երկարացնելու ցանկությունը, հանդերձյալ աշխարհում ավելի լավ կյանքով ապրելու հույսը (մանավանդ երկրային կյանքում ճնշված, տառապած մարդկանց մոտ), լավ գործերի համար վարձատրվելու, վատ գործերի համար պատժվելու և այլ գաղափարներ։ Վերոհիշյալ բոլոր հանգամանքները դարձել են հենց այն նյութական պատճառը, որի հետևանքով մարդիկ սկսել են հավատալ հոգու անմահությանը։

Նախնադարյան մարդու հասկացողությամբ բնության մեջ ամենազորեղ ուժը՝ դա բնության առարկաների ու երևույթների մեջ թաքնված ոգին է, որը կարող էր և՛ օգտակար լինել, և՛ վնասակար։ Նման դեպքում մարդուն մնում էր խոնարհվել այդ երևույթների առաջ, օգտակար երևույթները համարելով «բարի» իսկ վնասաբերը՝ «չար»։ Խուսափելով չար ոգիներից, մարդիկ միաժամանակ նրանց դեմ օգնության էին կանչում բարի ոգիներին, իսկ հաճախ էլ հաճոյանում նրան, շողոքորթում, զոհեր մատուցում, որպեսզի այդ չար երևույթներն այլևս չվնասեն իրենց։

Ֆանտաստիկ, գերբնական ուժերին՝ «հոգիներին» և «ոգիներին» հավատալը նախնադարյան մարդկանց մոտ հարուցեց անիմիստական հավատալիքներ։ Շատ ժողովուրդների մոտ գոյություն են ունեցել այնպիսի հավատալիքներ, որ իբր իրենք առաջացել, սերվել են հատկապես այս կամ այն կենդանիներից կամ բույսերից, որ իրենց նախնիները այս կամ այն կենդանին կամ բույսն է։ Այստեղից էլ հայտնի են աստված տոտեմները (պաշտամունքի առարկաները). գառներ, ցուլեր, օձեր, ծառեր և այլն։ Ավելի ուշ, երբ առաջանում են դասակարգերը, հասարակության մեջ տիրող հարաբերությունները տարածվում են նաև «ոգիների» աշխարհի վրա։ Մարդիկ աստծուն պատկերացնում են մարդու կերպարանքով, իսկ ոգիների աշխարհում տարբերում են իշխող և ենթարկվող «ոգիներ»։ Բարի և չար ոգիների մասին պատկերացումների հետ միաժամանակ երևան եկան նաև առաջին ծեսերը, որոնց օգնությամբ մարդը միջոցներ էր փնտրում գերբնական ուժերին իր կողմը տրամադրելու, նրանց համոզելու կամ ստիպելու համար։ Նրանց հզորությունը ցանկալի ուղղությամբ գործադրելու ձգտումով մարդիկ հաճախ դժվար կացությունից դուրս գալու համար օգնության էին կանչում «հզոր ուժերին»։ Հետագայում այս հողի վրա հանդես են գալիս առանձին մարդիկ (շամանները, քրմերը), որոնք «հզոր ուժերին» համոզելու կամ «ստիպելու» մեջ ավելի «կարող» կամ «ընդունակ» անձնավորության համբավ են ձեռք բերում։ Այսպես է առաջանում հոգևորականների դասը, իսկ հետագայում նաև եկեղեցին՝ իր սխոլաստիկ աշխարհայեցողությամբ և իդեալիստական փիլիսոփայությամբ։

Գերբնական ուժերի վերաբերյալ մարդիկ ստեղծում են նախ պոլիթեիզմի՝ բազմաստվածության և այնուհետև մոնոթեիզմի՝ միաստվածության ֆանտաստիկ պատկերացումներ։ Հատկանշական է այն հանգամանքը, որ քրիստոնեական, բուդդայական, մահմեդական և բոլոր մյուս կրոններում էլ ոգի-



ների և հոգիների անիմիստական պատկերացումները դեռ պահպանվում են։ Ավելին, դրանք պահպանվում են նաև իդեալիստական փիլիսոփայության մեջ։ Իսկ ժամանակակից կապիտալիզմի, իմպերիալիզմի պայմաններում, բուրժուական իդեալիստական փիլիսոփայությունն ավելի է թաղվում միստիցիզմի և խավարամոլության մեջ։

«Շահագործողների դեմ մղած կռվում,— գրում է Լենինը,— շահագործվողների անզորությունը նույնպես անխուսափելիորեն հանդերձյալ լավագույն կյանքի հավատ է ծնում, ինչպես բնության դեմ մղած պայքարի մեջ վայրենու անզորությունն աստվածների, սատանաների, հրաշքների ու այլ բաների հավատ է ծնում։ Ով իր ամբողջ կյանքում աշխատում է ու կարիքի մեջ է, կրոնը նրան երկնային կյանքում հեզություն ու համբերություն է ուսուցանում, մխիթարելով նրան երկնային հատուցման հույսով։ Իսկ նրանց, ովքեր ուրիշի աշխատանքով են ապրում, կրոնը բարեգործություն է ուսուցանում երկրային կյանքում, նրանց արդարանալու շատ էժանագին միջոց առաջարկելով իրենց շահագործողական ամբողջ գոյության համար, և ձեռնտու գնով երկնային բարեկեցության տոմսեր ծախելով։ Կրոնը ժողովրդի հաշիշն է։ Կրոնը հոգևոր օղու մի տեսակն է, որի մեջ կապիտալի ստրուկները խեղդում են իրենց մարդկային պատկերը, փոքրիշատե մարդավայել կյանքի իրենց պահանջը» (Երկեր, հ. 10, էջ 92—93)։

Չնայած ժամանակակից պայմաններում շահագործման լծի տակ հեծող միլիոնավոր աշխատավորներ հասկացել են կրոնի և իդեալիզմի գաղափարների սնանկությունն ու ռեակցիոն էությունը, սակայն դեռ քիչ չեն այնպիսի մարդիկ, որոնք հավատում են այդ սնանկ գաղափարախոսություններին։ Քիչ չեն նաև այն մարդիկ, որոնք չկարողանալով բացատրել կապիտալի աշխարհին հատուկ տնտեսական ճգնաժամերը, գործազրկությունը, պատերազմները և այլ երևույթներ, դրանք դիտում են որպես աստվածային պատիժ ու նրանց մասին ստեղծում կեղծ, ֆանտաստիկ պատկերացումներ։ Այս տեսակետից ժամանակակից մարդկանց մոտ կրոնական հավատալիքների ծագման և պահպանման խթանը ոչ թե բնության ահռելի ուժերի դեմ պայքարի նրանց անզորությունն է, այլ կապիտալի աշխարհում տիրող դասակարգային ճնշման դեմ մարդկանց անզորությունը, նրանց անօգնական վիճակը։ Տարբերությունն այն է միայն, որ նախամարդը ենթակա էր բնության ուժերի, իսկ շահագործողական հասարակարգերում ապրող ժամանակակից մարդը՝ հասարակական-դասակարգային ուժերի ազդեցությանը։

Ինչպես հայտնի է, նախնադարյան մարդը կարողանում էր արտադրել շատ չնչին քանակությամբ գոյության միջոցներ, այն էլ միայն իր համար։ Սակայն հետագայում, երբ նա հասավ զարգացման բարձր աստիճանի, կարողացավ բարձրացնել նաև իր աշխատանքի արտադրողականությունը և արտադրել, ոչ միայն առօրյա կարիքների բավարարման, այլև հավելյալ արտադրանք, որը նրա փառավոր հաղթանակն էր բնության ուժերի դեմ մղած պայքարում։ Մարդն առաջին անգամ հնարավորություն ստացավ նյութական բարիքներ ստեղծելու վաղվա օրվա համար։ Սակայն մարդու այդ նոր նվաճումն, իր հերթին, նաև չարիք ծնեց մարդկության համար։ Մարդկային հասարակության առաջընթաց նավն իր խարիսխը ձգեց մամռոտ ծովածոցում՝ ծնվեց մասնավոր սեփականությունը, որն իր հերթին հանգեցրեց դասակարգերի առաջացման։ Անդասակարգ հասարակությունը բզկտվեց իրենց շահերով հակա-

դիր, անտագոնիստական դասակարգերի։ Մարդը, որ բնության ստրուկն էր, դարձավ մարդու ստրուկը, իր իսկ ստեղծած կարգերի ստրուկը։ Եվ, քանի որ շահագործվող աղքատը, ստրուկ մարդը այլ միջոցներ չունի բացի երազելուց, ուստի դիմում է կրոնին, որը նրանց տանջանքների համար փոխհատուցում է խոստանում, եթե ոչ երկրային, գոնե անդրշիրիմյան կյանքում, ոչ թե նրա համար, որ չգիտե բնության տարերային ուժերի առաջացման պատճառները, կամ տգետ է, այլ նրա համար, որ անզոր է դասակարգային՝ սոցիալական ուժերի հանդեպ։

Սակայն հարցը միայն դրանով չի սահմանափակվում։ Աստծուն հավատում են ո՛չ միայն աղքատները, այլև հարուստները։ Դասակարգային հասարակության մեջ ո՛չ միայն ճնշվածներն ու շահագործվողներն են անզոր կերպով ենթարկվում հասարակական կյանքի կույր ուժերին և տարերայնորեն զարգացող հասարակական օրենքների ազդեցությանը, այլ ամբողջ հասարակությունը։ Հասարակական կյանքի կույր ուժերը, շահագործողական հասարակարգերում քաղաքակրթված մարդկանց կողմից նույնպես դիտվում են որպես խորհրդավոր, գերբնական։ Կապիտալիստական հասարակարգում մարդու ամբողջ կյանքը կախված է տարերայնորեն ծագող իրադրություններից, որոնք բխում են տվյալ հասարակարգի արտադրաեղանակի ոչ պլանային բնույթից։ Սարսափը վաղվա օրվա համար համակել է ո՛չ միայն պրոլետարիատին, շահագործվող դասակարգերին, այլ ամենահարուստ կապիտալիստներին։ Պրոլետարիատին մշտապես սպառնում են սովը, գործազրկությունը, իսկ կապիտալիստներին՝ ներդրված կապիտալի կորուստը և սնանկացումը։

Վերլուծելով կապիտալիստական հասարակության մեջ կրոնի արմատները՝ Վ. Ի. Լենինը մատնանշել է, որ դրանք «...գլխավորապես սոցիալական են։ Աշխատավոր մասսաների սոցիալական ճնշվածությունը, նրանց առերևույթ կատարյալ անօգնականությունը կապիտալիզմի կույր ուժերի հանդեպ, որն ամեն օր և ամեն ժամ հազարապատիկ ավելի ամենասոսկալի տառապանքներ, ամենավայրագ տանջանքներ է պատճառում շարքային բանվոր մարդկանց, քան ամեն տեսակ արտակարգ պատահարներ, ...ահա թե որտեղ է կրոնի արդի ամենախոր արմատը... երկյուղը կապիտալի կույր ուժերի հանդեպ, որը կույր է, որովհետև ժողովրդի մասսաները չեն կարող նախատեսել, որը պրոլետարիատի և մանր տնտեսատիրոջ կյանքի ամեն մի քայլափոխում սպառնում է նրան բերել «հանկարծահաս», «անակնկալ», «պատահական» քայքայում, կորուստ, մուրացկանություն, պաուպերի, պոռնկության, սովամահության դուռը հասցնել և հասցնում է,— ահա արդի կրոնի... արմատը...» (Երկեր, հատ. 15, էջ 505)։

Կրոնը ո՛չ միայն սոցիալական, այլև գնոսեոլոգիական (ճանաչողական) արմատներ ունի։ Կրոնի (ինչպես և իդեալիզմի) թեորիական-ճանաչողական արմատները կայանում են նրանում, որ ճանաչողության բարդ, բազմակողմանի և հակասական պրոցեսից վերցվում է ինչ-որ մի կողմը և չափազանցվում՝ ի վնաս մյուս կողմերի։ Ինչպես մատնանշել է Լենինը, իդեալիզմն ու կրոնը ճանաչողության գծերից, կողմերից մեկի, միակողմանի, չափազանցեցրած զարգացումն է, ճանաչողության բարդ պրոցեսի կողմերից մեկի վերածումը «բացարձակի՝ մատերիայից, բնությունից կտրված, աստվածայինի»։ Այդ են վկայում նաև փիլիսոփայության մեջ էմպիրիզմի, ռացիոնալիզմի, սուբյեկտիվ իդեալիզմի և դոգմատիզմի ուղղությունները։ Մյուս թեորիական



իմացական մոմենտը, որից կարող են կառչել իդեալիզմն ու կրոնը, հանդիսանում է գիտական ճանաչողության դժվարությունները, գիտության կողմից տակավին չլուծված հարցերի առկայությունը։

Միաժամանակ բուրժուազիան իր հերթին ջանք չի խնայում հասարակության գիտակցության մեջ սերմանելու և ամրապնդելու կրոնական նախապաշարումներ՝ սնոտիապաշտություն, միստիկական գաղափարներ։ Բայց հետաքրքրական է, որ երբեմն իրենց հորինած, իրենց ստեղծած հավատալիքներին հավատում են նաև իրենք՝ շահագործողները, այնպես, ինչպես վայրենին իր սեփական ձեռքերով կավից կուռք էր ստեղծում և ապա հավատում էր իր ստեղծածի զորությանը։ Կրոնին հավատացող մարդն ունի աչքեր, որպեսզի չտեսնի, ունի բանականություն, որպեսզի չխորհի,— մատնանշել է Ֆոյերբախը։ Ինչո՞ւ են ուրեմն մարդիկ կապիտալիստական հասարակության մեջ զարգացած տեխնիկայի, գիտության ու կուլտուրայի առկայության պայմաններում, անկախ իրենց սոցիալական դրությունից, կրթությունից, հավատում աստծուն։ Այստեղ քիչ դեր չի խաղում նաև եկեղեցու իշխանությունը, որը մարդկանց դաստիարակում է ռեակցիոն, կրոնական, իդեալիստական գաղափարներով, կանխամտածված կերպով մթագնում է մարդկանց գիտակցությունն ամեն տեսակ նախապաշարմունքներով, կեղծ, ֆանտաստիկ ու միստիկական պատկերացումներով։

Սակայն միայն կրոնական դաստիարակության, միայն կրոնական զգացմունքներով և խաբեությամբ ժամանակակից մարդուն չի կարելի դարձնել կրոնի գերին.-անհրաժեշտ են այլ, ավելի հիմնավոր պատճառներ ևս։ Ժամանակակից կրոնի գոյության գլխավոր պատճառը, ինչպես նշեցինք, պետք է որոնել կապիտալի աշխարհի մարդկանց կեցության մեջ, ուր հասարակության լայն խավերը ճնշումից ու տառապանքներից ազատվելու համար այլ միջոց չգտնելով դիմում են անիրական երազանքների, իլյուզիայի, թմրության։ Շահագործողական դասակարգերի առկայության պայմաններում մարդկանց առօրյա կյանքն այնպիսին է, որ նրանց գամում է կրոնական ֆանտաստիկ երազանքներին։ Կապիտալի աշխարհում ոչ թե մարդն է իշխում բնության և հասարակական երևույթների վրա, այլ հակառակը։

Գիտությունը, մատերիալիստական փիլիսոփայությունը վաղուց արդեն ապացուցել են, որ «ինքնածին» գաղափարներ չկան և չեն էլ կարող լինել։ Մարդու գիտակցության մեջ ոչ մի գաղափար, հասկացողություն, պատկերացում, միտք, հավատալիք և զգացմունք ինքնածին չի առաջանում, դրանք արդյունք են շրջապատող իրականության ու հասարակական կյանքի ազդեցության։ Մարդու բոլոր զգացմունքներն ու հավատալիքները դրսևորվում են նրա ֆիլոգենետիկ կյանքի զարգացման ճանապարհին, որպես կեցության յուրահատուկ անդրադարձում նրա գիտակցության մեջ։ Մարդու մոտ ոչ մի զարմանք չի կարող առաջանալ նրա կեցությունից անկախ, այդ իսկ պատճառով անհերքելի է այն միտքը, որ չկան ու չեն կարող լինել «վերուստ» տրված կրոնական գաղափարներ, զգացմունքներ։ Ուրախությունը, տխրությունը, վախը, հրապուրանքը, սերը կամ ատելությունը մարդկանց մոտ առաջանում են շրջապատի ազդեցության շնորհիվ, անկախ կրոնական պատրանքներից ու աշխարհայացքից։ Դրանք մարդկանց մեջ գոյություն ունեին մինչև կրոնի ծագումը և գոյություն կունենան նրա անհետանալուց հետո ևս։ Տարբեր կրոններ հավատացյալների մեջ զարգացնում են տարբեր զգացմունքներ՝ մասնավորապես վախի, կեղծ երախտագիտության,

սարսափի, «սիրո», ատելության և այլն, օգտագործելով դրանք իրենց նպատակների համար։ Կրոնը և եկեղեցին մարդկային այդ զգացմունքներին տալիս են կրոնական երանգ, կապելով դրանք «գերբնական ուժերի», «աստծո», «հրեշտակների», «չար» ու «բարի» ոգիների և այլ աստվածային ուժերի հետ։

Կրոնը չի ծնվել մարդու հետ միասին։ Եթե մարդուն նրա ծնված օրից դաստիարակեն այնպես, որ նա չշփվի հավատացյալների հետ, եթե նրան հենց կյանքի սկզբից ճիշտ հասկացողություն տան շրջապատող աշխարհի մասին, ռեալ և գիտական կերպով բացատրեն այն ամենը, ինչ տեղի է ունենում բնության և հասարակության մեջ, եթե դնեն այնպիսի պայմաններում, որ նա ոչ մի սոցիալական ճնշում չզգա, ապա նա ոչ մի կրոն չի ունենա, չի զգա կրոնական հավատալիքների կարիքը. Նրա բանականությունը չեն մթագնի անդրշիրիմյան դրախտային հավերժական կյանքի աստվածային հրապույրները։

Կրոնական հավատալիքների ծագման պատճառները սրանով չեն սպառվում, որովհետև, ինչպես հայտնի է, կրոնական հավատալիքներից զերծ չեն նաև բավականին զարգացած և գիտելիքներով զինված մարդիկ, իսկ երբեմն էլ՝ նույնիսկ գիտնականներ։ Ինչպես հայտնի է, մեզ մոտ՝ սոցիալիզմի երկրում, ուր հիմնովին արմատախիլ են արված կրոնական հավատալիքներ ծնող բոլոր սոցիալական արմատները, այնուամենայնիվ որոշ մարդիկ դեռ հավատում են աստծուն, սրբերին և այլ աստվածային ուժերի։ Այսպիսի մարդկանց գիտակցության մեջ կրոնական հավատալիքների սաղմնավորման ու պահպանման պատճառը կրոնապաշտ մեծերի դաստիարակությունն է, նախնիների սովորության պահպանումը, տրադիցիայի ուժը, հնի, կապիտալիզմի մնացուկների պահպանումը նրանց մտաշխարհում։ Այստեղ իրենց դերն են խաղում նաև կապիտալիստական աշխարհից այս կամ այն ճանապարհով թափանցող ռեակցիոն գաղափարները, պատերազմի ժամանակ տարածվող կրոնական և սնոտիապաշտական հավատալիքները, գիտության կողմից դեռևս չբացահայտված շատ հարցեր. օրինակ, այն, որ դեռևս անբուժելի են որոշ հիվանդություններ։ Այդ գործում որոշակի դեր են խաղում նաև կանխամտածված հորինվածքները, կրոնական առասպելների դիցաբանական շղարշումն ու խաբեությունները։ Աստծուն հավատում են հատկապես նրանք, ովքեր փոքր հասակից դեռևս ընդունակ չլինելով սեփական դատողություններ անելու կյանքի երևույթների մասին, շրջապատի դաստիարակության և ներշնչման ազդեցությամբ, ընտելացել են կրոնի «ճշմարտությանը»։

Շարժվում է պատմության անիվը, իր հետևում թողնելով հասարակական կյանքի բազմազան երևույթներ, բազմաթիվ սերունդներ՝ իրենց սովորություններով ու գաղափարախոսությամբ։ Եվ հեռու չէ այն օրը, երբ նա, ով ստեղծել է պաշտամունքն ու կրոնն ընդհանրապես, հենց իր ձեռքով կխորտակի այն. մարդն ինքն էլ կդառնա իր ստեղծած աստծո գերեզմանափորը։ Գիտության, և, հատկապես Սովետական աստրոֆիզիկայի նվաճումներն այժմ բանականության հզոր զենքով են թափանցում տիեզերքի անհուն տարածությունները, ուր մատերիայի՝ տիեզերական մարմինների շարժման հավերժական օրենքին հնազանդ ապրում են ոչ թե աստվածները, այլ երկնային մարմինները՝ ծնվելու և մեռնելու հավիտենական երկունքով բռնված։

---



# ՀԱՅՐԵՆԻՔԻ ԽԻԶԱԽ ԲԱԶԵՆԵՐԸ

1963 թ. փետրվարին լրանում է ՍՍՌՄ Քաղաքացիական ավիացիայի 40 տարին։ Մեր աշխատակիցը զրույց ունեցավ Քաղաքացիական օդային նավատորմի Հայկական առանձին ավիախմբի հրամանատարի քաղաքական գծով տեղակալ ընկ. Զ. ՊՈՂՈՍՅԱՆԻ հետ, որն ասաց հետևյալը.

— Յոթնամյակի անցած չորս տարիները գիտության ու տեխնիկայի վճռական բնագավառներում պատմական հաղթանակներ բերին մեր ժողովրդին։ Սովետական քաղաքացիներ Յուրի Գագարինի, Գերման Տիտովի, Անդրիան Նիկոլաևի և Պավել Պոպովիչի տիեզերական թռիչքները ցույց տվին գիտատեխնիկական մտքի մեծ նվաճումները ՍՍՌՄ-ում։ Մենք, ավիատորներս, այդ բանն առանձնապես լավ ենք զգում։

Մեր քաղաքացիական օդային նավատորմը դեռ երբեք այնպիսի թափով չի զարգացել, ինչպես մեր օրերին։ Չէ՞ որ դեռ մի երկու-երեք տարի առաջ ընդամենը մի քանի օդային ուղիներում էին շահագործվում գազատուրբինային շարժիչներով բազմատեղ արագընթաց ինքնաթիռները։ Իսկ այժմ այդ ինքնաթիռներն արդեն շահագործվում են 76 ներքին և 46 միջազգային օդային ուղիներում։ Ներկայումս Ա. Ն. Տուպոլևի կոնստրուկցիայի ՏՈւ—104, ՏՈւ—104—A և ՏՈւ—104—Б ինքնաթիռներն սպասարկում են 59 օդային ուղիների, Ս. Վ. Իլյուշինի ԻԼ—18 կոնստրուկցիայի ինքնաթիռները՝ 42 և Օ. Կ. Անտոնովի ԱՆ—10 կոնստրուկցիայի ինքնաթիռները՝ 21 օդային ուղիների։ Եթե յոթնամյակի սկզբում ռեակտիվ ինքնաթիռներով օդային փոխադրությունների տեսակարար կշիռը կազմում էր ընդամենը 17 տոկոս, ապա 1961 թվականին այն հասավ 67,5 տոկոսի։ Երբ խոսք է լինում տեսակարար կշռի մասին, պետք է նկատի ունենալ և այն, որ փոխադրությունների ծավալն էլ արագ աճում է։ Այսպես, օրինակ, ուղևորների փոխադրությունը 1961 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, ավելացել է մոտ 12, իսկ 1958 թվականի համեմատությամբ՝ երեք անգամ։ Օդային փոխադրությունների ավելացման այդպիսի արագ թափ չի տեսել կապիտալիստական և ոչ մի երկիր։

Օդային տրանսպորտն ավելի ու ավելի մեծ չափով է մտնում սովետական մարդու կենցաղի մեջ։ Վերջին ժամանակներս զգալի չափով կատարելագործվել են տեղական օդային հաղորդակցության գծերը և 1961 թվականին ուղևորների ընդհանուր թվի 57 տոկոսը փոխադրվել է այդ գծերով։

Օդային փոխադրությունների աճի հետ մեկտեղ մեզ մոտ իջնում են տարիֆները։ Կապիտալիստական երկրներում վերջին հինգ տարում օդային ներքին տարիֆները մնացել են անփոփոխ (դրանք 2—2,5 անգամ բարձր են մեր տարիֆներից)։ Քաղաքացիական ավիացիան կապիտալիստական երկրներում շարունակում է մնալ որպես հարուստների տրանսպորտ։ Այնինչ մեզ մոտ ավիացիայից օգտվում են ավելի ու ավելի լայն ժողովրդական մասսաները։

Այժմ ՍՍՌՄ օդային նավատորմը խնդիր է դրել առաջիկա երկու տարում օդային փոխադրությունների տարիֆներն իջեցնել ևս 20—30 տոկոսով և յոթնամյակի վերջում տոմսի արժեքը հասցնել գնացքի կուպեավոր վագոնի տոմսի արժեքին։

Մեր ավիացիան, իրար մոտեցնելով երկրի ամենահեռավոր շրջանները, դրանով իսկ ուժեղացնում է տնտեսական ու կուլտուրական կապերը նրանց միջև և նպաստում մեր Հայրենիքի ժողովուրդների տնտեսական ու կուլտուրական մերձեցմանը։ Ավիացիան ավելի, քան տրանսպորտի որևէ այլ տեսակ, հնարավորություն է տալիս մեծ չափով տնտեսել ժամանակը։ Հաշված է, որ ինքնաթիռով մեկ միլիոն ուղևոր փոխադրելը, տրանսպորտի մյուս տեսակների համեմատությամբ, մոտ 2 միլիոն 800 հազար մարդ-օրվա խնայողություն է տալիս։ Այդ ազատ ժամանակը սովետական մարդիկ օգտագործում են շահավետ աշխատանքային գործունեության, հանգստի, ինքնազարգացման, իրենց երեխաների դաստիարակության և այլ նպատակներով։ Իսկ այս ամենը, վերջին հաշվով, նպաստում է աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, որը վճռական նշանակություն ունի կոմունիզմի հաղթանակի համար։

Վերջին տարիներս խիստ զարգացել է հատուկ կիրառման ավիացիան։ Ահա մի քանի համեմատություն։ 1953 թվականին գյուղատնտեսության և անտառտնտեսության մեջ ավիաքիմիական աշխատանք է կատարվել մոտ վեց միլիոն հեկտար տարածության վրա, 1961 թվականին՝ 26 միլիոն, իսկ յոթնամյակի վերջում կհասնի ավելի քան 40 միլիոն հեկտարի։

Գյուղատնտեսության հետագա վերելքի, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման գործում քաղաքացիական ավիացիան խոշոր դեր ունի կատարելու։ Այդ դերն ավելի ու ավելի է մեծանում գյուղատնտեսության մեջ հերբիցիդների և այլ թունաքիմիկատների կիրառման կապակցությամբ։

Ներկայումս չկա ժողովրդական տնտեսության այնպիսի մի բնագավառ, որին ավիացիան այս կամ այն չափով չսպասարկի։ Օդանավատորմի ինքնաթիռներն ակտիվ մասնակցում են Արկտիկայի և Անտարկտիդայի հետազոտման գործին, օգնում երկրաբանական-հետախուզական աշխատանքներին՝ նպաստելով նավթի, գազի, պոլիմետաղների, ոսկու և այլ հանքավայրերի հայտաբերմանը։ Անգնահատելի է ավիացիայի նշանակությունը փոստային բոլոր տեսակների, մանավանդ պարբերական մամուլի առաքման գործում։ Էլ չեմ խոսում սանիտարական ավիացիայի մասին, որն ամբողջ բնակչության սերն ու հարգանքն է վաստակել։

Լայն հոսանքով օդային ուղիներ է դուրս գալիս ժամանակակից ավիացիոն տեխնիկան։ Մեծանում է տուրբոպտուտակային և տուրբոռեակտիվ ինքնաթիռների թիվը, որոնք այսօր արդեն օդային նավատորմում հիմնական տեղ են գրավում։

Փորձնական թռիչքների փուլից արդեն դուրս է եկել և Մոսկվա—Խաբարովսկ ուղեծիր հանվել ՏՈւ—114 ինքնաթիռը։ Դա աշխարհում ամենախոշոր օդանավն է. բեռնատարողությամբ և թռիչքի հեռավորությամբ նա աշխարհում հավասարը չունի։ Նրա լիակատար թռիչքային կշիռը հասնում է 175 տոննայի, իսկ շարժիչների հզորությունը՝ ավելի քան 60 հազար ձիու ուժի։ Դա 15 հազար ձիու ուժով ավելի է, քան Վ. Ի. Լենինի անվան հզոր ատոմագնաց սառցահատի շարժիչների ուժը։ ՏՈւ—114 տուրբոպտուտակային օդանավը



170 կամ 220 ուղևորներով յոթ հազար կիլոմետր տարածությունն առանց միջանկյալ վայրէջքների անցնում է ինը ժամից էլ պակաս ժամանակամիջոցում։

Մոտ օրերս ուղեծիր են դուրս գալու ԱՆ—24, ԻԼ—62 և ՏՈւ—124 ինքնաթիռները։ Երկու մոտորանի ԱՆ—24-ի կրեյսերային արագությունը ժամում 500 կիլոմետր է։ Ինքնաթիռը վերցնում է 32—42 ուղևոր, թռիչքային ու վայրէջքային հիանալի տվյալներ ունի և կիրառվելու է գլխավորապես ուղևորներին տեղական օդային գծերից մագիստրալ օդանավակայանները տեղափոխելու համար։ ՏՈւ—124 երկմոտորային ինքնաթիռը, որը ժամում 850—900 կրեյսերային արագություն ունի, նախատեսվում է լայնորեն օգտագործել ոչ միայն երկրի ներքին, այլև մերձակա միջազգային գծերում։

Մեր երկրի օդանավատորմի օդագնացների փառապանծ շարքերում իր արժանի տեղն է գրավում քաղաքացիական օդանավատորմի Հայկական առանձին ավիախմբի կոլեկտիվը։ 1953 թվականին դանդաղընթաց ՊՈ—2 ինքնաթիռների բազայի վրա ստեղծված Հայաստանի ավիաջոկատը օրեցօր դառնում է ժամանակակից տեխնիկայով հագեցած քաղաքացիական օդանավատորմի տերիտորիալ վարչություններից մեկը։ Հայաստանում Սովետական իշխանության հաստատման և Հայաստանի Կոմունիստական պարտիայի ստեղծման 40-ամյակի տոնակատարության նախօրյակին Երևանում շահագործման հանձնվեց նոր՝ «Արևմտյան» օդանավակայանը, որի շնորհիվ ռեսպուբլիկայի աշխատավորները հնարավորություն ստացան հարմարավետ ԻԼ—18 ինքնաթիռով մի քանի ժամում հասնելու Մոսկվա, Լենինգրադ, Կիև, Սիմֆերոպոլ, Մինքրալնիե վոդի, Սոչի, Բաքու և մեր անծայրածիր Հայրենիքի արդյունաբերական ու կուլտուրական այլ կենտրոններ։

Եթե 1955 թվականին ԼԻ—2 ինքնաթիռներով մինչև Մոսկվա թռիչքը տևում էր 12 ժամ, երեք պարտադիր վայրէջքով, ապա այժմ ԻԼ—18-ը այդ նույն տարածությունն առանց միջանկյալ վայրէջքի կտրում է 3 ժամ 10 րոպեում։

Հայաստանի հեռավոր մարդատար օդային ուղիներում իրենց երկարամյա, անբասիր ու բարեխիղճ աշխատանքով աչքի են ընկնում Հայաստանի ավիախմբի վետերաններ, քառակի միլիոնատեր Հարություն Պարոնյանը, եռակի միլիոնատերեր Շավարշ Սարգսյանը, Իվան Կուբատյանը, Միխայիլ Պարակչիևը, կրկնակի միլիոնատեր ավագ-շտուրման Հովհաննես Արուցյանը, քառակի միլիոնատեր, բորտ-ռադիստ Սուրեն Թունյանը, բորտ-մեխանիկ Գրիշա Հովհաննիսյանը և ուրիշներ։

Իրենց լավ աշխատանքով մեր միլիոնատերերից ետ չեն մնում ԻԼ—18 ինքնաթիռների հրամանատարներ Աշոտ Շահրամանյանի, Բորիս Մարկովի, ԻԼ—14 ինքնաթիռների հրամանատարներ Օլեգ Սելեզնյովի, Գուրգեն Բաղդասարյանի անձնակազմերը և ուրիշներ։

Մեր ավիախմբին փառք բերեց օդաչու Էդիկ Բախշինյանի անօրինակ սխրագործությունը։ Մարտական «Կարմիր Դրոշ»-ի շքանշանով պարգևատրված Բախշինյանն այժմ մեծ հաջողությամբ թռիչքներ է կատարում ԻԼ—14 ինքնաթիռով, փոխադրելով ուղևորներ Խարկով, Օդեսա, Թբիլիսի և այլ քաղաքներ։

Ավիախումբը խոշոր աշխատանք է կատարում ռեսպուբլիկայի ներքին գծերով ուղևորներ, փոստ և բեռներ փոխադրելու ուղղությամբ։ Երևանը օդային գծերով կապված է Ջերմուկ կուրորտի, Սիսիանի, Գորիսի, Ղափանի, Լենինականի, Ստեփանավանի, Ախալքալակի, Կիրովականի, Բասարգեչարի, Եղեգնաձորի, Ստեփանակերտի և այլ վայրերի հետ։ Ավտոմեքենայի 10—11 ժամվա

ճանապարհը մեր ԱՆ—2 ինքնաթիռներն անցնում են մեկ ժամում։ Ամեն օր Երևանից շրջաններն են թռչում 500—600-ից ավելի ուղևորներ։ Իրենց օրինակելի աշխատանքով հատկապես աչքի են ընկնում 37-րդ ավիաէսկադրիլիայի օդաչուները, որի հրամանատարն է երիտասարդ օդաչու Ռոբերտ Բաղրամյանը։ Աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի օրինակ են տալիս ինքնաթիռի հրամանատարներ Գրիգոր Հայրապետյանը, Սերգեյ Տրաքզանյանը և ուրիշներ։

Ավիախմբի օդաչուներն ակտիվ մասնակցում են կոլտնտեսային դաշտերի բերքատվության բարձրացման համար մղվող պայքարին։ 1962 թվականի գարնան և ամառվա ընթացքում 36-րդ ավիաէսկադրիլիայի օդաչուներ Վլադիմիր Սենյագինը, Կոբա Մարկոսյանը, Ամրա Զաքարյանը, Ռաֆիկ Կոստանդյանը և ուրիշներ մի քանի երկաթուղային վագոն պարարտանյութ ու թունաքիմիական նյութեր են փոխադրել Հայաստանի ու Ադրբեջանի կոլտնտեսային դաշտերը։

Ուսումնասիրելով ՍՄԿՊ Կենտկոմի Նոյեմբերյան պլենումի որոշումները և պլենումում ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցումը, մեր օդային նավատորմի անձնակազմը պարտավորվել է ավելի լավ օգնել գյուղի աշխատավորներին՝ կոլտնտեսությունների ու սովխոզների առջև դրված խնդիրները պատվով կատարելու համար։

Ավիախմբի օդաչուները մեծ օգնություն են ցույց տալիս առողջապահության օրգաններին՝ դժվարին ռելիեֆ ունեցող հեռավոր անկյուններում ապրող մարդկանց կյանքը փրկելու գործում։ Ավիախումբը օգնում է նաև գիտահետազոտական հիմնարկություններին ու հիդրոօդերևութաբանական ծառայությանը՝ մեծ բարձրությունների վրա մթնոլորտային պայմաններն ուսումնասիրելու բնագավառում։ Մեր օդաչուներն օգնում են երկրաբանական-հետախուզական կազմակերպություններին մեր ռեսպուբլիկայի, Ադրբեջանի, Վրաստանի հանքավայրերը հետախուզելու, դրանով իսկ նպաստելով երկրի հանքային ռեսուրսների ավելացմանը։

Հիշատակման արժանի է նաև մեր ինժեներա-տեխնիկական և սպասարկող անձնակազմի ծանր ու քրտնաջան աշխատանքը։ Ավիախմբի գլխավոր ինժեներ կոմունիստ Նիկոլայ Միլյուկովի, ինժեներներ Բորիս Փիլիպոսյանի, Արկադի Բալաշովի և այլոց գլխավորությամբ նրանք ինքնաթիռները նախապատրաստում են անվտանգ թռիչքների համար։ Սպասարկող անձնակազմի մեջ իրենց բարձր արտադրողական աշխատանքով աչքի են ընկնում գծային շահագործման արհեստանոցի պետ Մարտին Հովհաննիսյանը, գծային ռադիոտեխնիկ կոմերիտական Մաքսիմ Գրիգորյանը, հատուկ ավտոմեքենայի վարորդ Տիգրան Միքայելյանը, հերթափոխային ինժեներ Միհրան Կարապետյանը, տեխնիկ-բրիգադավար Սպարտակ Մանուկյանը, ռեակտիվ ինքնաթիռների տեղամասի հերթափոխության պետ Մարտիրոս Շահինյանը, դիսպետչեր Վասիլի Օլխովնիկովը և ուրիշներ։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի որոշման համաձայն Զինված Ուժերը կրճատվելու կապակցությամբ մեր օդանավակայանում աշխատելու են եկել բանակից զորացրված օդաչուներ, ստորաբաժանումների հրամանատարներ, ինժեներներ ու տեխնիկներ։ Նրանք լծվել են խաղաղ ստեղծագործական աշխատանքի և իրենց արժանի ներդրումն են կատարում մեր ընդհանուր գործում։ Այստեղ հարկ է ընդգծել կործանիչ գնդի նախկին հրամանատար, պաշտոնաթող գնդապետ կոմունիստ Պավել Տարասովի, գնդի հրամանատարի՝ թռիչքային մասի գծով տեղակալ, փոխգնդապետ Միխայիլ Պրոկաշինի, ավիաէսկադրիլիայի հրամանատար, այժմ ԻԼ—14 օդանավի հրամանատար մայոր Գագիկ Պապյանի, էսկադրիլիայի հրամանատար, այժմ օդանավակայանի երթևեկության գծով պետի տեղակալ մայոր Վարդան Բադալյանի և այլոց լավ աշխատանքը։

Մեր ավիախմբի կոլեկտիվի անդամների ճնշող մեծամասնությունը բարեխիղճ է աշխատում, պատասխանատվության բարձր զգացումով և հմտորեն է կատարում հանձնարարված գործը։ Բայց, ինչպես ամեն մի մեծ կոլեկտիվում, այնպես էլ մեզ մոտ դեռևս հանդիպում են մարդիկ, որոնց մոտ ցածր է պատասխանատվության զգացումը, խախտում են թռիչքային կարգը։ Դրանց թիվը, իհարկե, շատ փոքր է։ Մեր խնդիրն է՝ բարձրացնել պահանջկոտությունը յուրաքանչյուր ստորաբաժանման մեջ, ամենուրեք ստեղծել անհանդուրժողական վերաբերմունք կարգապահության խախտումների նկատմամբ։ Օդանավակայանների, ծառայությունների ղեկավարները, պարտիական, պրոֆմիութենական և կոմերիտական կազմակերպությունները պետք է ամենօրյա հսկողություն սահմանեն, որպեսզի ճշտությամբ կատարվեն թռիչքային աշխատանքի գործող կանոնները, բոլոր աշխատողներին դաստիարակեն գիտակցական կարգապահության ոգով։

Քաղաքացիական օդանավատորմի Հայկական առանձին ավիախմբի կոլեկտիվը բոլոր ջանքերը կգործադրի, որպեսզի պատվով կատարի այն խնդիրները, որոնք դրված են նրա առջև յոթնամյակի հինգերորդ տարում։

---

## ՄՈՍԿՎԱՅԻ ՕԴԱՅԻՆ ԴԱՐԲԱՍՆԵՐԸ

ՍՍՌՄ Քաղաքացիական օդային նավատորմի ինքնաթիռները այժմ օրական օդ են բարձրացնում ավելի քան 100 հազար ուղևորներ: Յոթնամյակի անցած չորս տարում ավիացիոն փոխադրումների ծավալը երկրում ավելացել է համարյա երեք անգամ:

Մոսկվայի ավիացիոն հանգույցը դառնում է խոշորագույնը աշխարհում: Ինքնաթիռները մայրաքաղաքը կապել են միութենական բոլոր ռեսպուբլիկաների, տնտեսական խոշոր կենտրոնների, բոլոր մայրցամաքների հետ: Վերջերս շահագործման հանձնվեց աշխարհում ամենամեծ Մոսկվա—Հավանա ավիոգիծը: Սակայն արդեն Մոսկվայի օդանավակայանները չեն կարող բավարարել եղած պահանջները:

Ընդլայնվում են Վնուկովո և Շերեմետևո օդանավակայանները, Լենինգրադյան շրջանում կառուցվում է քաղաքային օդանավակայան: Մերձմոսկովյան Դոմոդեդովո քաղաքից ոչ հեռու կառուցվում է աշխարհում մեծագույն օդանավակայանը, որը պետք է ընդունի և ուղևորի այնքան ճանապարհորդներ, որքան ներկայումս ուղևորում են մայրաքաղաքի բոլոր օդանավակայանները միասին վերցրած: Մոսկվայի օդային նոր դարբասը կառուցվում է տեխնիկայի վերջին խոսքով. միաժամանակ նա կարող է ընդունել նոր տիպի ինքնաթիռներ:

թերգաղ, թե ինչ է ավել ժողովրդին նրա դուստ-րը, շարքային մի բանվորունի: Մյուսների նման նա էլ հաճախ կանգնում է դազգահի մոտ ու խորհում նորանոր գործերի մասին, մտքով սլանում երանավետ ապագան, որի կառուցման համար դեռ պետք է աշխատել ու աշխատել:

Ազգուշ Մինասյանի հիանալի նախաձեռնությունների մասին քեզ կպատմի բաժանմունքի պետ Աշոտ Ալեքսանյանը: Տակավին երիտասարդ, բայց կյանքի մեծ փորձ կուտակած մարդը, որը բոլորովին վերջերս է ենթավարպետից դարձել բաժանմունքի պետ, բաց կանի շարքային ջուլհակուհու աշխատանքային կենսագրության մի նոր էջ ևս:

Ժողով էր. քննարկվում էր ետ մնացող կոլեկտիվին ընկերական օգնություն ցույց տալու հարցը: Խոսեցին շատերը: Հետո խոսեց Ազգուշը:

— Եկեք օգնենք մեր ընկերներին: Այնտեղ աշխատում են քիչ փորձ ունեցող մարդիկ, մեքենաները լավ սարքավորված չեն: Տեղամասի տեխնիկական վիճակը նույնպես լավ չէ: Ես կոչ եմ անում, որ ընկերներով աշխատանքի անցնենք ետ մնացող բաժանմունքը, օգնենք մարդկանց և ամեն ինչ լավ կլինի:

Օր-օրի բարձրացավ մեքենաների արտադրողականությունը, տեմպերի տախտակում երևացին նոր ցուցանիշներ: Առաջին տասնօրյակը կոլեկտիվը փակեց 30 տոկոսով առաջադրանքը գերակատարած. բոլորեց ամիսը, ֆաբրիկայի պատվո տախտակում գրվեց նաև № 1 բաժանմունքի անունը: Այդ գործի նախաձեռնողը՝ Ազգուշ Մինասյանը, ամսվա առաջադրանքը կատարեց 220 տոկոսով և Հայրենիքին տվեց 20 հազար մետր բարձրորակ գործվածք:

***

Գործարանային նորաստեղծ փողոցով իրիկնապահին անցնում են ֆաբրիկայի մարդիկ, տեքստիլագործները ու բազմության մեջ՝ կապույտ գլխաշորով ջուլհակուհին՝ Ազգուշը:

Դադրած ու վաստակած, երկրորդ հերթից է տուն դարձել նա: Մտքով չի էլ անցնում, որ իր գործած կտորներով կարած զգեստներով կարծես ջահելանում են մարդիկ, գեղեցկանում: Չի մտածում այդ մասին: Բայց անհանգստացնում է նրան այն բանը, որ մեկի շրջազգեստը աննաշակ կտորից է կարված և մտածում է, վաղը ավելի գեղեցիկ հյուսել, այնպես անել, որ աչք շոյող կտորներ դուրս գան իր դազգահից... Որ բոլոր, բոլոր մարդկանց հագուստները ժպտան պայծառ ժպիտով:

Իսկ տանը, այս ուշ ժամին, զարթնել է թոռնիկը, աչքը հառել դռանը ու իրեն է փնտրում...

Գիտնական չէ նա, ոչ էլ զաղտնախորհուրդ գյուտերի հեղինակ, հերոսի աստղ չի կրում իր կրծքին, ոչ էլ գրպանում՝ պարտիական տոմս: Բայց նա ունի մի պայծառ սիրտ ու օգտակար գործ է կատարում մարդկանց համար:

Ս. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

---

# ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՄԱՐՏԻԿՆԵՐԸ

## ԱԿԱՆԱՎՈՐ ՄԱՐՔՍԻՍՏ-ՀՐԱՊԱՐԱԿԱԽՈՍԸ



Ուսանողական ցույց էր Խարկովի համալսարանում: Դրանից առաջ ցույցի ղեկավարը գոտեպնդիչ ու կրակոտ մի ճառ էր արտասանել, և ոգևորված ուսանողները նրան ձեռքերի վրա բարձրացրած դուրս բերին փողոց: Դասադուլավորներին միացան նաև բանվորները: Ցուցարարների վրա հարձակվեցին կոզակները և ձեռքերից խլելով այդ գեղեցիկ, քսանչորսամյա երիտասարդին՝ տարան բանտ: 1909 թվականին էր այդ: Վեց ամիս հետո նա դուրս եկավ բանտից մի հրամանագրով, ըստ որի ըմբոստ գործունեության պատճառով նա արտաքսվում է Խարկովից և զրկվում համալսարանական քաղաքներում բնակվելու իրավունքից:

Խարկովի համալսարանի ֆիզիկո-մաթեմատիկական ֆակուլտետի բնագիտական բաժանմունքի ուսանող Արշավիր Մելիքյանն էր նա—միջահասակ, նշանձև, շագանակագույն, հոգեխույզ աչքերով, թավ հոնքերով:

Համալսարանից վտարվելուց հետո, մեկնում է արտասահման՝ Շվեյցարիա, ուր և ծանոթանում է պրոլետարիատի մեծագույն առաջնորդի, իր արտահայտությամբ՝ «պայքարող ոգու այդ հսկա ու վեհապանծ էվերեստի»՝ Լենինի հետ: Հայտնի է, որ նրանց լարված մտքերը հաճախ են բախվել շախմատի տախտակի առաջ, և այդ մտավոր մարզանքին հաճախ են հաջորդել զրույցներն ու մտքերի փոխանակությունները մարքսիզմի տարբեր հարցերի շուրջ: 1901 թվականից լինելով սոցիալ դեմոկրատ, 1906-ից նա դառնում է բոլշևիկյան պարտիայի նվիրված անդամներից մեկը:

Մելիքյանը սովորել է Ցյուրիխի համալսարանի փիլիսոփայական և Նյուշատելի համալսարանի գրական ֆակուլտետներում: Արտասահմանում նա մտերմացել է Պլեխանովի, Լունաչարսկու, Կարլ Լիբկնեխտի, Ժան-Ժորեսի, Ավգուստ Բեբելի, Ռոզա Լյուքսեմբուրգի և այլ նշանավոր մարքսիստ գործիչների հետ: Մեծ է նրանց և, հատկապես, Վլադիմիր Իլյիչի ազդեցությունը նրա գաղափարական-քաղաքական աշխարհայացքի ձևավորման, համոզված մարքսիստ դառնալու գործում:

Լինելով արտակարգ ընդունակ, կարճ ժամանակամիջոցում նա տիրապետում է գերմաներենին, ֆրանսերենին, լատիներենին, ազատ օգտվում է հունարեն հին գրականությունից, շատ լավ հասկանում անգլերեն, իտալերեն: Մարքսիզմի կլասիկների, եվրոպական գրականության գանձերը նա բնագրից էր կարդում, անգիր գիտեր համաշխարհային պոեզիայի լավագույն կտորները՝ Էսքիլեսից մինչև Հեսսեին: Գյոթեի և Հայնեի երկրպագուն ջերմ սիրով ու առանձին հպարտությամբ էր արտասանում Տերյանի, Թումանյանի, Իսահակյանի, Դուրյանի լիրիկական բանաստեղծությունները:

Նրան ճանաչում, հարգում ու սիրում էին արտասահմանում գտնվող ականավոր բոլշևիկ գործիչները: Ռուսական սոցիալ-դեմոկրատները նրան համարում էին լավագույն մարքսիստ տեսաբան, լիովին վստահում նրան ու բարձր գնահատում նրա կարծիքն իրենց աշխատությունների մասին:

Մելիքյանը բացառիկ պոլեմիստ էր և կրա-

կան հարցերի խոր իմացությամբ և նրբաճաշակությամբ աչքի ընկան Ա. Մելիքյանը և Ռ. Բոլոտնիկովը: 1936 թ. Մելիքյանը երկու զեկուցում կարդաց ռուս մեծ պոետ Ա. Ս. Պուշկինի մասին. այդ զեկուցումների ձեռագրերում կարելի է տեսնել նրա բարեխղճորեն կազմած պլանները, որոնք մի քանի էջ են գրավում:

Հայարտան դահլիճը 1936 թ. ապրիլի 18-ին ծայրե-ծայր լցված էր գրասեր հասարակությամբ: Այդ օրը Մելիքյանը դասախոսելու էր Րաֆֆու կյանքի և գրական գործունեության մասին:

— Րաֆֆուն պետք է հանել մոռացության փոշուց,— ասաց նա,— մենք նրան պետք է մոտենանք և գնահատենք նոր, պատմական առումով: Առանց Րաֆֆու մենք չէինք ունենա Շիրվանզադեի, Նար-Դոսի, Մուրացանի թողած գրական արժեքավոր ժառանգությունը... Րաֆֆին հայ վիպագրության հիմնադիրն է:

Դրանից մի քանի օր անց, մի քանի գրականագետ ընկերներ նամակ են գրում «Պրոլետարի» խմբագրությանը՝ որով հայտնում են, որ իրենք հրաժարվում են Ա. Մելիքյանի բռնած վարքագծից, Րաֆֆուն համարում ռեակցիոն և ոչ թե գրականության, հասարակական կյանքի ու մտքի զարգացման բնագավառում խոշոր դեր խաղացած առաջադեմ հեղինակ, ինչպիսին համարում էր զեկուցողը:

Այդ տարիներին անձի պաշտամունքն արդեն իր ավերն էր գործում մարդկանց հոգիներում:

Շնորհալի հրապարակախոսին և գրասերին անսահման հետաքրքրում, մտահոգում էր մեր գրականության բախտը, նրա զարգացման մակընթացություններն ու տեղատվությունները: Այդ ժամանակաշրջանում հաճախակի էին տրտունջները, թե մենք չունենք մեր ժամանակի Թումանյաններն ու Սունդուկյանները, Պարոնյանները... առաջարկում էին պատվերների օգնությամբ ստեղծել մասսաներին հուզող ու հետաքրքրող գրական երկեր:

— Պատվերով հարցը չի լուծվի, պատվերով մնայուն գրականություն չի կարելի ստեղծել: Անհրաժեշտ է, որ մարքսիստ գրականագետները, քննադատները դադարեն միայն պատեհ առիթներով հանդես գալ, սկսնակներին ավելի հաճախ օգնեն իրենց խելացի դիտողություններով ու տեղին քննադատությամբ: Չի կարելի մեկին գովաբանել այնքան, որ նա հավասարակշռությունը, գլուխը կորցնի, կամ մեկին այն աստիճան խարազանել, որ նա հուսալքվի, գրիչը կոտրի և այլ բանով զբաղվի: Գրական աշխարհում ավելի քան կործանարար է գրողին անտեսելը, լռության մատնելը: Անհրաժեշտ է անհաշտ պայքար մղել այս վնասակար բարքերի դեմ:

Լավատեսությամբ համակված՝ բերահավատներին ասում էր.

— Մի՞թե կարելի է անտեսել, ժխտել Չարենցի պես հսկային: Չէ՞ որ XX դարի մեր Նարեկացին է նա,— և հիացմունքից շողում էին նրա ժպտացող աչքերը: Նրան խիստ հետաքրքրում էր մեծ պոետի ստեղծագործության ընթացքը, նա ակընդետ հետևում էր նրա ստեղծագործության բոլոր ելևէջներին:— Երգիծա՞նք եք ուզում, ահա ձեզ «Քաջ Նազարը», տաղանդավոր ստեղծագործություն է: Միայն դրանով էլ Դեմիրճյանը երկար կապրի:

Արշավիր Մելիքյանը պատրաստվում էր ավարտել մի քանի խոշոր մենագրություններ՝ «Դասակարգային կռիվը հայոց պատմության մեջ», «Հայ մամուլի պատմությունը», «Նյութեր հայ հասարակական շարժման պատմության» և այլն: Սակայն «Պրոլետարից» ազատվելուց հետո խիստ նեղացան նրա կյանքի շրջանակները: Կենսասեր, առույգ ու բարեհամբույր մարդը դարձավ մեկուսացած ու ինքնամփոփ, հազվադեպ էր դուրս գալիս Հայարտնից: Շատ մարդկանց մտքեր մարզած, խելացի, կիրթ ու պիտանի բազմաթիվ ղեկավար աշխատողներ պատրաստած մեծ մանկավարժը իր կյանքի վերջին տարիներին, անձի պաշտամունքի նեղ շրջանակներից ճնշված, ստիպված քիչ էր գրում: Նա դարձել էր խիստ զգուշավոր, խուսափում էր «մեղքեր գործելուց»:

Այդ տարիներին «անհետացել» էին նրա լավագույն աշակերտներից շատերը: Հերթը հասավ և նրան...

«Քանի՜, քանի հերոս կյանքեր մոխրացան,
Եվ նախումներ վառ հույսերով չքացան»:

Է. ՍԱՐՈՅԱՆ

# Գիտության աշխարհում

## ՏԵՍՈՂՈՒԹՅՈՒՆԸ ՄԱՏՆԵՐԻ ԾԱՅՐԻՆ

*Մի քանի ամիս առաջ «Իզվեստիա»-ն (1962 թ., № 253) պատմեց Նիժնի Տագիլի երիտասարդ կին բնակչի՝ Ռոզա Կուլեշովայի մասին, որը որպես թե շոշափելով, առանց նայելու, կարդում էր սովորական տպագրական տեքստը, լուսանկարների վրա գտնում մարդկանց և անգամ որոշում էր տարբեր առարկաների գույները։ Եվ իսկույն երևան եկան այդ ֆենոմենը բացատրել փորձող բազմաթիվ հիպոթեզներ։*

*Առաջ քաշվեց մի բավական խելացի հիպոթեզ՝ Ռոզան ունի ուժեղ զարգացած շոշափելիք, և նա խորդուբորդության աստիճանով որոշում է տպագրական ներկով ծածկված գծերը կամ տարբերում ներկանյութերի ստրուկտուրան։ Եղան և այլ հիպոթեզներ՝ ջերմային և լուսային բարձր զգայունություն, քիմիական բաղադրությունը որևէ կերպ տարբերելու ունակություն։*

*Նոյեմբերին Ռոզա Կուլեշովան գտնվում էր Սվերդլովսկի կուրորտոլոգիայի և ֆիզիոթերապիայի ինստիտուտում, որտեղ Ռոզայի արտասովոր ունակություններն արդեն բացատրում էին այսպես՝ շոշափական ռեցեպտորների, կամ, ինչպես ինժեները կասեր՝ ճնշման հայտնիչների հարմարվելը լուսաընկալմանը։*

*Դեկտեմբերի սկզբներին ՍՍՌՄ ԳԱ ինֆորմացիայի հաղորդման պրոբլեմների ինստիտուտի հրավերով Ռոզա Կուլեշովան եկավ Մոսկվա։ Հետազոտությունների մոսկովյան ցիկլի ծրագրում, որ մշակել էին Դ. Միրզան և Դ. Բոգոյավլենսկայան, ինչպես նաև պրոֆեսոր Յ. Բասինը, ներառվեց նաև ՍՍՌՄ ԳԱ բիոֆիզիկայի ինստիտուտը, որտեղ ծրագրվում էր ստուգել լուսազգայունության հիպոթեզը։ Մի ամբողջ սերիա փորձերի շնորհիվ բացահայտվեց պարզապես անհավատալի մի փաստ—Ռոզա Կուլեշովայի մատների մաշկի տակ, իսկ միգուցե հենց բուն մաշկի մեջ գտնվում են ամենաիսկական լուսաընդունիչներ, տեսողության յուրատեսակ օրգաններ։*

*Ձե՞ք հավատում։ Դե, ինչ արած, դրան իսկապես դժվար է հավատալ, բայց, այնուամենայնիվ, փորձեք մարտի դուրս գալ ձեր սեփական անհավատության դեմ, ծանոթացեք էքսպերիմենտներին։*

*Դրանցից առաջինը պետք է հաստատեր, թե Ռոզան խավար և լուսավոր տեղերը իսկապես տարբերում է միայն դրանց խորդուբորդության աստիճանով։ Դրա համար պատկերը ցուցադրվեց մի կիսաթափանցիկ փոքր էկրանի վրա, պարզ ասած՝ ոչ թափանցիկ ապակու վրա։*

*Միանգամայն պարզ է, որ նման սիստեմում էկրանի տարբեր հատվածների մակերեսի մաքրությունը բոլորովին կապված չէ դրանց լուսավորված լինելու հետ։ Եվ, չնայած դրան, Ռոզան, մատները հպելով էկրանին, հստակ տարբերում էր խավար և լուսավոր տեղերը։ Այստեղ կարելի է միայն մեկ հետևություն անել՝ Ռոզա Կուլեշովայի մատների ծայրերը, մեր աչքերի նման, արձագանքում են ամենասովորական լույսին, պարզ ասած՝* տեսնում են: *Այս ամենը այնքա՜ն պարզ և այնքա՜ն արտասովոր է, որ առաջին րոպեներին նույնիսկ իրենք՝ էքսպերիմենտատորները չկարողացան հավատալ փորձերի արդյունքներին։*

*Ճիշտ է, մարդկային սովորական թերահավատությունը նրանց մոտ արագ տեղի տվեց ազնիվ գիտնականի զգուշավորությանը։ Իսկ եթե դա այնուամենայնիվ լույս չէ՞, այլ շատ նուրբ զգայունություն ջերմաստիճանի փոփոխությունների նկատմամբ։ Չէ՞ որ էկրանի լուսավոր հատվածները, թեկուզ և մեկ աստիճանի հարյուրերորդական չափերով, այնուամենայնիվ տաք են խավար հատվածներից։ Հարցը լուծեցին երկու հատուկ լուսաֆիլտրեր։ Սկզբում օբյեկտիվի առաջ տեղակայեցին այնպիսի ֆիլտր, որը բաց չէր թողնում ինֆրակարմիր (ջերմային) ճառագայթները. Ռոզան առաջվա պես գտնում էր խավար ու լուսավոր հատվածները։ Այնուհետև տեղակայվեց այնպիսի ֆիլտր, որը բաց չէր թողնում լույսը, բայց գրեթե անարգել բաց էր թողնում ինֆրակարմիր ճառագայթները։ Ընդ որում էկրանի վրա ստացվեց մի յուրատեսակ ջերմային պատկեր, սակայն Ռոզան չկարողացավ այն հայտնաբերել։ Այս ձևով բարձր շոշափելիքից հետո մերժվեց ջերմային բարձր զգայունությունը։ Մնաց միայն տեսողությունը՝ մատների ծայրերին։*

*Երբ տեսողության բնագավառում աշխատող երիտասարդ ֆիզիկոս գիտնականներ Մ. Բոնգար-*

չեն գտնում դաշնակցական գրականության և պարբերական մամուլի էջերում»։

Հեղինակը մի քանի շտրիխներով ամփոփ պատկերում է քաղաքական այն եռուն մթնոլորտը, որի մեջ գործում են ամերիկահայ կազմակերպությունները։ Մասնավորապես, նա ցույց է տալիս հայկական առաջադիմական կազմակերպությունների դրական դիրքորոշումը խաղաղության համար պայքարի հարցում, նրանց ջերմ վերաբերմունքը Ն. Ս. Խրուշչովի՝ ԱՄՆ կատարած այցելության նկատմամբ։ Արտասահմանի հայությունն այդ ուղևորությունը որակել է որպես «դարուս դեպք»,— ընդգծում է Գասպարյանը, մի քանի քաղվածքներ բերելով սփյուռքահայ մամուլի էջերից։

Հատկապես մեծ դժվարություններ է հաղթահարել հեղինակը Թուրքիայի հայության կյանքի մասին ամփոփ պատկերացում տալու համար։ Չէ՛ որ նյութերը խիստ ցաք ու ցրիվ են սփյուռքահայ պարբերական մամուլի էջերում, իսկ Անատոլիայի ներքին գավառների հայկական կյանքի մասին ամիսներով, նույնիսկ տարիներով ոչ մի հաղորդագրություն չի լինում։ Այնուամենայնիվ, ընթերցողի առջև է դրված հարուստ նյութ։ Նա կարող է քայլ առ քայլ ծանոթանալ երկրում ազգային խտրականության քաղաքականության զարգացմանը, հատկապես ազգային փոքրամասնությունների մայրենի լեզվի դեմ սկսված արշավին։

«Թուրքիայում տեղի ունեցած պետական հեղաշրջումից հետո ազգային փոքրամասնությունների դեմ ուղղված ելույթները չդադարեցին,— շարունակում է հեղինակը. 1960 թ. սեպտեմբերին Թուրքիայի ազգային ուսանողական միությունը հրապարակորեն պահանջում էր արգելել այլ լեզուների գործածությունը հասարակական վայրերում։ Այդ կամպանիան այնպիսի բնույթ ընդունեց, որ թուրքական մի շարք թերթեր ստիպված եղան զգուշացնել ուսանողական ծայրահեղ քայլերից, որոնք կարող էին աննպաստ հետևանքներ ունենալ»։

Ինչպես բոլոր գլուխներում, այնպես էլ Թուրքիայի հայությանը նվիրված մասում մանրամասնորեն վերլուծվում է կրթական գործը Սփյուռքում։ Միշտ և ամենուրեք այլևայլ խոչընդոտների ու դժվարությունների կողքին (նյութական անբարենպաստ վիճակ, ուսուցիչների պակաս և այլն), շեշտը դրվում է հայոց լեզվի, հայոց պատմության ու գրականության և ուրիշ առարկաների գծով հայերեն դասագրքերի խիստ պահանջի վրա։

Մեր օրերում կատարվող հայրենադարձության հարցը շոշափվում է իրանահայ գաղթօջախի կացության մասին գլխում։ Հատկապես կարևոր է, երբ հարցը քննվում է քաղաքական առումով։ «Իրանի հայերի իսկական հայրենասիրության մասին է վկայում այն փաստը,— գրում է նա,— որ նրանք բուռն խանդավառությամբ ընդունեցին առաջիկա հայրենադարձության լուրը... Մի քանի ամսվա ընթացքում Իրանում հայրենադարձության համար ցուցակագրվեցին տասնյակ հազարավոր մարդիկ։ Այստեղ անհրաժեշտ ենք համարում ընդգծել, որ հայերի հայրենադարձության առնչությամբ Իրանի կառավարությունը հայտարարեց, թե չի առարկի Սովետական Միություն տեղափոխվել ցանկացող հայերի մեկնմանը... Ի՞ղձ էր դաշնակցական «Ալիք» թերթը փորձում թունավորել մթնոլորտը, ի՞ղձ էր նա աշխատում համոզել հայերին, որ հրաժարվեն Հայրենիք գնալու որոշումից։ Դա լավագույն ապացույցն էր այն բանի, որ, չնայած «Ալիքը» լույս է տեսնում հայերեն լեզվով, բայց այն որևէ չափով չի կապված գաղութի աշխատավորական զանգվածների հետ, դեմ է նրանց կենսական շահերին ու արհամարհված է նրանցից... Ինչ վերաբերում է իրանահայերի հայրենադարձությանը, ապա անհրաժեշտ է նշել այս հարցում Իրանի կառավարության բարի կամքը, որի շնորհիվ շատ իրանահայեր հնարավորություն են ստանում վերադառնալ իրենց հայրենիքը»։

Ինչպես և պետք էր սպասել, աշխատության մեջ հատուկ տեղ է տրված լիբանանահայ գաղթօջախին։ Պատմական հանգամանքների բերումով մի քանի տասնյակ տարիներ Լիբանանը, ավելի ճիշտ Բեյրութ քաղաքի հայ Սփյուռքում տանում է այն դերը, ինչ մի ժամանակ վիճակված էր Կոնստանդնուպոլսին, այն դարձել է Սփյուռքի անպաշտոն կենտրոնը, այստեղ կենտրոնացված են մեծ քանակությամբ կրթական հիմնարկություններ, մշակութային, մարզական միություններ, մամուլի օրգաններ, առկա է բավականին պատրաստված մտավորականություն։

Աշխատության մեջ, հատկապես, շեշտվում է հայ և արաբ ժողովուրդների բարեկամությունը, նրանց միասնական ելույթները իմպերիալիզմի և տեղական ռեակցիայի դեմ մղվող պայքարում։ Գրքում մեջ է բերված լիբանանյան ժողովրդի ազգային հերոս, Լիբանանի Մինիստրների խորհրդի առաջին նախագահ Ռիադ Սոլհի 1943 թվականին արտասանած այս խոսքերը. «Ես հայերի ներկայությունն այս երկրում ընդունում եմ գրկաբաց և առանձին հաճույքով։ Նրանք այս երկրի անկախությունը գուցե մեզնից ավելի լավ պաշտպանեն։ Որովհետև նրանք երկար ժամանակ ապրել են բռնության տակ, պայքարել և զոհվել են անկախության համար, հետևաբար լավ գիտեն անկախության արժեքը։ Իմ կառավարության սիրտը բաց է հայերի համար»։

Ելնելով այն հանգամանքից, որ լիբանանահայ գաղթօջախին հատուկ դեր է վիճակվել Հայկական սփյուռքում, միանգամայն արդարացի պետք է գտնել հեղինակի ձգտումը հենց այս կապակցությամբ վերլուծելու և շարադրելու մի շարք ընդհանուր հարցեր, ինչպիսիք են՝ սփյուռքահայ մամուլը, քաղաքական կազմակերպություններն ու կուսակցությունները, կապը մայր Հայրենիքի հետ։



Օրըստօրե ավելի է մեծանում սփյուռքահայ դեմոկրատական մամուլի դերը։ «Եվ դա հասկանալի է,— գրում է Ս. Գասպարյանը,— Մերձավոր և Միջին Արևելքի երկրների ազգային-ազատագրական պայքարի զարթոնքը, միջազգային բանվորական շարժման աննախընթաց հաջողությունները ընդդեմ սառը պատերազմի, հանուն խաղաղության և ժողովուրդների անվտանգության ծավալված տիտանական պայքարը, Ասիայի և Աֆրիկայի երկրների ու Սովետական Միության միջև ընդլայնվող բարեկամական կապերը և աշխարհում տեղի ունեցող քաղաքական ու տնտեսական այլևայլ փոփոխությունները իրենց արձագանքն են գտնում առաջադիմական մամուլի էջերում, մամուլ, որը չի կարող հեռու մնալ աշխատավորական լայն մասսաներին հուզող հարցերից, չի կարող չգտնվել ժամանակակից կյանքի խաչմերուկում»։ Սփյուռքահայ դեմոկրատական մամուլի էջերի մշտական զարդն է լրատվությունը Սովետական Հայաստանի աշխատավորների կյանքի մասին։ Բացի դրանից, մամուլի միջոցով իրականանում են մշտական կապերը հայ գաղթօջախների միջև։

Բայց միատարր չէ սփյուռքահայ մամուլը, ինչպես և նրա դեմոկրատական մասը։ «Միանգամայն սխալ կլիներ,—գրում է Ս. Գասպարյանը,— պատկերացնել սփյուռքահայությունը առանց դասակարգային ներհակ ուժերի, սոցիալական սուր հակասությունների, առանց դասակարգային պայքարի։ Դրանով է պայմանավորված հայ քաղաքական մի քանի կուսակցությունների առկայությունն Սփյուռքում»։ Ահա թե ինչու, հեղինակը սփյուռքահայ մամուլն իրավացիորեն դասակարգում է ըստ գաղափարախոսությունների, ըստ քաղաքական ուղղությունների։

Դեմոկրատական մամուլի մեջ գոյություն ունեցող զանազան ուղղությունները, սակայն, չեն խանգարում նրանց՝ միասնականորեն հանդես գալու քաղաքականության հիմնական հարցերից շատերի բնագավառում։ Շեշտելով հետպատերազմյան շրջանում ծայր առած վճռական օրիենտացիան դեպի Սովետական Հայաստանը, հեղինակն ընդգծում է, որ «այդպիսի պայմաններում, սփյուռքահայ մամուլի մի շարք օրգաններ, շարունակելով մնալ որոշակի դասակարգային խմբերի ու խմբավորումների ու դրանց շահերն արտահայտող քաղաքական կուսակցությունների գաղափարական դիրքերի վրա, հանդես են գալիս հայրենասիրական ուժերի ճակատում»։ Այդ է ապացուցում հնչակյան, ռամկավարական մամուլի և մի շարք չեզոք օրգանների գործունեությունը, որն արտացոլումն է հնչակյան և ռամկավարական կուսակցությունների հայրենասիրական գործունեության։ Ահա թե ինչու Հայաստանի Կոմպարտիայի XXII համագումարում ՀԿԴ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ընկ. Յա. Զարոբյանն ասաց. «Այդ պարտիաների նկատմամբ մեր դիրքերը միանգամայն պարզ են։ Մենք մտադիր չենք նրանց գաղափարական որևէ զիջում անել, բայց մենք ողջունում ենք նրանց հայրենասիրական գործունեությունը կապիտալիստական երկրների հայկական գաղութների պայմաններում»։

Աշխատության տարբեր գլուխներում ու բաժիններում բազմիցս արծարծվում է ձուլման, կամ ինչպես սփյուռքահայ մամուլն է արտահայտվում «Սպիտակ ջարդի» պրոբլեմը։ Հեղինակը շեշտում է այն արդարացի և խոր անհանգստությունը, որ տիրում է սփյուռքահայության որոշակի շրջաններում՝ ԱՄՆ-ում, Ֆրանսիայում և այլուր մեծ քայլերով առաջ ընթացող ձուլման պրոցեսի հետևանքով։ Անշուշտ, նա չի բաժանում և քննադատում է առանձին գործիչների հոռետեսությունն այդ հարցում։ Բայց և միևնույն ժամանակ շատ արժեքավոր դիտողություններ է անում հայ երիտասարդ սերնդի դաստիարակության կապակցությամբ, դաստիարակություն, որի հիմքում պետք է ընկած լինի մատաղ սերնդին Սովետական Հայաստանի մասին գիտելիքներ հաղորդելու ձգտումը։ Իսկ մի շարք դպրոցներում Սովետական Հայաստանի մասին բավարար գիտելիքներ չեն տրվում. կան դպրոցներ, որտեղ արգելվում է «Սովետական Հայաստան» բառերն արտասանել։ Դրա պատճառները բազմազան են։ Այդ հարցում իրենց սև գործն են կատարում թե՛ տվյալ երկրի քաղաքական պայմանները և թե՛ զանազան հայ քաղաքական խմբավորումները։ Մինչդեռ Սովետական Հայաստանի մասին գիտելիքներ տալը,— գրում է Ս. Գասպարյանը,— հայրենասիրական դաստիարակության վճռական գործոններից մեկն է։ «Ուսումնասիրելով հայ լեզուն, պատմությունը,— շարունակում է հեղինակը,— հայ մանուկները պետք է հնարավորին չափ բազմակողմանի գիտելիքներ ստանան Սովետական Հայաստանի մասին, այլապես նրանց հայրենասիրական զգացմունքները կարող են խամրել, կամ նույնիսկ հքանալ»։

Եզրափակելուց առաջ, մեկ անգամ ևս շեշտելով աշխատության արժեքավորությունն ու կարևորությունը, անհրաժեշտ ենք գտնում մի քանի դիտողություններ անել։

Գրքի հիմնական թերությունը, մեր կարծիքով, սփյուռքահայ գաղթօջախների սոցիալ-տնտեսա-

կան վիճակի թույլ վերլուծությունն է։ Այս թերությունը, իր հերթին, երբեմն այնպիսի պատկերացման առիթ է տալիս, թե սփյուռքահայ գաղթօջախները սոցիալ-տնտեսական ինքնուրույն միավորներ են, անկախ տվյալ երկրների համապատասխան հանգույցներից։ Բայց, եթե այդ դեպքում պատճառը, մասնավորապես, նյութերի սակավությունն է, ապա հետևյալ հարցերն արդեն հեղինակն ինքն ի վիճակի էր շտկել։

Խոսքը, առաջին հերթին, վերաբերում է Էջմիածին—Անթիլաս տագնապի ավելի խոր ու բազմակողմանի վերլուծությանը, այդ գործում դաշնակցության և նրա տերերի՝ ամերիկյան իմպերիալիստների քաղաքականության մերկացմանը, մի բան, առանց որի մեր օրերի սփյուռքահայ կյանքի պատկերը խիստ պակասավոր կլինի։ Նույն կարգի դիտողություն կարելի է անել գրքի այն բաժնի վերաբերյալ, որտեղ քննարկվում են Հայ բարեգործական ընդհանուր միության (ՀԲԸՄ) և Անթիլասի հարաբերությունները։

Այնուհետև, մի շարք տեղերում աշխատությունը, մինչև լույս տեսնելը, նորացման և լրացման կարիք էր զգում։ Այսպես, օրինակ, «Կիպրոս» և «Եգիպտոս» գլուխներում անհրաժեշտաբար պետք էր պարզաբանել նոր հայրենադարձության հետ կապված քաղաքական իրադրությունը այդ գաղթօջախներում։ 177-րդ էջում հեղինակը նշում է, թե «Լոնդոնում հայերը որևէ ակումբ կամ սրահ չունեն», մինչդեռ գրքի լույս տեսնելուց ամիսներ առաջ այդպիսի ակումբ ստեղծվել էր։ Նույն ձևով «Սիրիա» գլուխը չի փոխադրվել Մերձավոր Արևելքի երկրների բաժինը, այլ մնացել է Եգիպտոսին հարևան, որովհետև, ըստ երևույթին, գիրքը կազմված է եղել մինչև Սիրիայի բաժանումը Արաբական Միացյալ Ռեսպուբլիկայից։ Քանի որ խոսվեց նյութի դասակարգման ու մատուցման մասին, ապա, մեր կարծիքով, ճիշտ կլիներ առանձին գլուխ հատկացնել ՀԲԸՄ-ին, առանց նկատի առնելով նրա վարչության աշխարհագրական դիրքը, ինչպես այդ իրավացիորեն արվել է Կյուլպենկյան հաստատության նկատմամբ։

Կան թերասացություններ ու անհասկանալի հատվածներ. ինչպես, օրինակ, անհասկանալի է մնում, թե ինչ առումով է կատարվում ԺԱՖ Ֆրանսահայ երիտասարդական միության և բարեգործականի հակադրությունը։ Ներքին այս կամ այն կարևոր հարցի նկատմամբ բացակայում է հեղինակի դիրքորոշումը։ Երբեմն հեղինակը մեջբերումներ է անում այս կամ այն սփյուռքահայ գործչից, քննադատում նրա տեսակետները, բայց չի նշում, թե ով է նա և քաղաքական որ հոսանքին է պատկանում։ Օրինակ, իրավացիորեն քննադատում է Տ. Գնդունու բուրժուական տեսակետը, ըստ որի ամերիկյան հայերի տնտեսական վիճակի վրա չեն տարածվում այդ երկրների «տնտեսական դժվարությունները»։ Բայց եթե ասվեր, որ Տաճատ Գնդունին ռամկավարական «Սուրհանդակ» թերթի խմբագիրն է, ապա ընթերցողն ավելի հեշտությամբ կկողմնորոշվեր նրա հանդեպ։

Աշխատության մեջ կան նաև էական բացթողումներ. օրինակ, ամերիկահայ զատ-զատ բնութագրվող մյուս կազմակերպությունների կողքին, պետք է անպատճառ տեղ տալ Ռամկավար-ազատական կուսակցության ամերիկյան մասնաճյուղի հատուկ բնորոշմանը։

«Սփյուռքահայ գաղթօջախներն այսօր» աշխատությունն անշուշտ անթերի լինել չէր կարող։ Արդեն նշեցինք, որ դա իր տեսակի մեջ առաջին գործն է։ Բարեբախտաբար թերությունները շտկելի են և չեն իջեցնում գրքի արժանիքը։ Ռեսպուբլիկայի ընթերցող հասարակայնությունը կարող է գոհ լինել իր սեղանին ունենալով արտասահմանյան մեր հայրենակիցների մասին նման մի գործ։

Կ. ԴԱԼԼԱՔՅԱՆ

# ԵՐԱԺՇՏՈՒԹՅՈՒՆԸ ԿԻՆՈՅՈՒՄ ԵՎ ՀԵՌՈՒՍՏԱՏԵՍՈՒԹՅՈՒՆՈՒՄ*

Կինոքննադատներն ու կինոսիրողները հաճախ են մամուլում արծարծում կինոարվեստի տարբեր հարցեր, քննադատելով կամ գովաբանելով կինոյի սցենարը, ռեժիսյորի կամ օպերատորի աշխատանքը, դերասանի վարպետությունը և այլն։

Համեմատաբար քիչ է խոսվում կոմպոզիտորի աշխատանքի, կինոերաժշտության մասին։ Գուցե երաժշտությունը բոլորովին չի՞ ազդում կինոֆիլմի որակի վրա և կապված չէ՞ սցենարիստի, ռեժիսյորի, օպերատորի ու դերասանի աշխատանքի հետ։ Ո՛չ։ Մենք գիտենք շատ լավագույն կինոնկարներ (սկսած համր կինոյից մինչև մեր օրերը), որտեղ երաժշտությունը մեծ դեր է կատարում։ Մենք գիտենք շատ հայտնի կինոռեժիսյորներ, որոնք առանց երաժշտության չեն պատկերացրել իրենց լավագույն ստեղծագործությունները։ Գիտենք նաև շատ կոմպոզիտորների, որոնք այսօր ճանաչված են միայն կինոյի միջոցով։ Ահա թե ինչու դժվար թե գտնվի մեկը, որ ժխտի երաժշտության կարևորությունը կինոյում։

Մի կողմ թողնելով կինոֆիլմերի տարբեր տեսակներում երաժշտության օգտագործման հարցը, խոսենք միայն գեղարվեստական ֆիլմերում երաժշտության դերի և նշանակության մասին։ Այս թեման անսպառ է ու վիճելի, բայց, քանի որ գոյություն ունեն պատմականորեն արդարացված որոշ սկզբունքներ և կինոյում երաժշտության օգտագործման մեծ փորձ, արժե որոշակի եզրակացություններ անել, իհարկե ձեռնպահ մնալով դեղատոմսեր առաջարկելուց, որովհետև ամեն մի առանձին դեպքում երաժշտության օգտագործման հարցը պետք է լուծել կոնկրետ և յուրովի։

Այժմ մեզ անհանգստացնում է սովետահայ կինոերաժշտության անմխիթար վիճակը և այդ պատճառով կաշխատենք նշել այն սխալներն ու թերությունները, որոնց հանդիպում ենք հատկապես վերջին շրջանի կինոնկարներում։

Գեղարվեստական ֆիլմում երաժշտությունը զորեղ միջոց է և կարող է էմոցիոնալ այնպիսի ընդգծված ու շեշտված արտահայտչականության հասնել, որին ոչնչով հնարավոր չէ փոխարինել ո՛չ ռեժիսյորական ու օպերատորական հնարամտությամբ, ո՛չ դերասանի հիանալի խաղով։ Եվ, հակառակը, երաժշտությունը կարող է իջեցնել ֆիլմի որակն իր տհաճ ու ձանձրալի միջամտությամբ։

Երբ երաժշտության տրամադրությունը, ռիթմը և հարմոնիան դրամատիկապես չեն համապատասխանում ֆիլմում տեղի ունեցող գործողությանը, պատկերին, տրամադրությանը, ռիթմին, այլ հնչում են բոլորովին անկախ, դառնում են տվյալ ֆիլմի համար անիմաստ ու բացի խանգարելուց, ուրիշ ոչ մի դեր չեն կատարում։ «Լավագույն» դեպքում դիտողը շեղվում է գործողության ընթացքին հետևելուց և ուշադիր լսում այդ «լավ» ու «գեղեցիկ» մեղեդին։ Իսկ քաջ հայտնի ու առավել ևս դասական երաժշտության օգտագործումը, եթե նա արդարացված չէ ու անհրաժեշտությունից չի բխում, խիստ անցանկալի է, որովհետև ավելի է շեղում դիտողի ուշադրությունը։

* Առաջարկության կարգով— Խմբ.։

Կինոյի առավելություններից մեկը, թատրոնի համեմատությամբ այն է, որ կինոն տեխնիկապես կարող է խուսափել շատ պայմանականություններից հօգուտ դիտողի։ Այսպես, օրինակ, կոմպոզիտորները հաճախ գրում են խմբերգ կամ երգ սիմֆոնիկ նվագախմբի նվագակցությամբ, որն օգտագործվում է «տեղին»։ Բայց դիտողը ոչ մի կերպ չի հավատում և չի ընդունում այս պայմանականությունը (պրոֆեսիոնալ կատարմամբ), այնինչ, եթե նույն երգը կատարեին կինոյի գործող անձինք, ավելի հասարակ ձևով, լիովին կհամոզեր դիտողին։

Հաճախ ռեժիսյորը, որ վերջիվերջո ինքն է պատասխանատու ֆիլմի ճակատագրի համար «դնում» է իրեն և, իհարկե, կոմպոզիտորին դուր եկող մի երգ կամ ռոմանս, որը, չկապվելով գործողության և, ընդհանրապես, ֆիլմի գաղափարի հետ, կրկին ապակենտրոնացնում է դիտողին, և այդ երգը դառնում է անտանելի։ Մի շարք գեղարվեստական ֆիլմերում մինչև այսօր էլ համր կինոյի իլյուստրատիվ երաժշտության նման սկզբից մինչև վերջ, տեղին ու անտեղի հնչում է երաժշտությունը թե՛ ազմուկների, թե՛ դիալոգների, թե՛ գործող անձանց խոսելու ժամանակ, մրցում նրանց հետ։ Հաճախ մեծ տեղ է տրվում «կադրից դուրս» ֆոնային երաժշտությանը, որը նույնիսկ նախօրոք տրամադրում ու զգացնել է տալիս ֆիլմի հերթական էպիզոդներն ու ծավալվող գործողությունները։ Տեղին կլինի հիշեցնել սովետական և արտասահմանյան առաջավոր կինեմատոգրաֆիստների հարուստ փորձը, որոնք ոչ միայն պակասեցրել են ֆոնային, «կադրից դուրս» երաժշտությունը, այլև փոքրացրել նրա ֆունկցիաները։ Նրանք հրաժարվել են ինչ-որ բանի մասին նախապես երաժշտությամբ «խոսելուց», քան դիտողը այն կտեսնի, չցանկանալով դիտողին փաթաթել որևէ միտք, որին նա պետք է աստիճանաբար հասնի ինքնուրույն զգացողությամբ, սեփական դատողությամբ։ Եվ երաժշտության այդ «կադրից դուրս» լինելն էլ հաճախ լինում է հարաբերական, թվում է, թե այն հնչում է ինչ-որ տեղ մոտերքում, լսվում է մեկի բաց պատուհանից կամ հարևան փողոցից։

Առաջավոր կինեմատոգրաֆիստների՝ երաժշտության «դոզայի» պակասեցումը չի ազդում ֆիլմի ներգործության ուժի վրա։ Ընդհակառակը, արտաքին արտահայտչական միջոցների տնտեսումն ավելի մոբիլիզացնում է կինեմատոգրաֆիայի ներքին (ավելի կարևոր) միջոցները։

Գեղարվեստական որոշ ֆիլմերում երաժշտությամբ հուշում և զգացնել են տալիս հետագա գործողությունը, նույնիսկ կոնֆլիկտը, իսկ կինոն սիրում է կոնտրաստ։ Որքան անհոգ և ուրախ է երգը, այնքան ավելի սոսկալի է դրան հաջորդող կատաստրոֆան, այնքան ցնցող ու հանկարծակի կրակոցը և այլն։ Բերենք մի քանի օրինակ սովետահայ կինեմատոգրաֆիստների վերջին շրջանի գործերից։ «Թռիչք անդունդի վրայով» կինոնկարը (ռեժիսյոր Լ. Իսահակյան, կոմպոզիտոր Կ. Օրբելյան)։ Ինժեներ Բալյանին ու քծնող Առաքելյանին պարտիայի շարքերից վտարելիս վարպետ Մարգարը արտասանում է իր մեղադրականը, և հենց այդ պահին հնչում է «հուզիչ», անիմաստ և խանգարող երաժշտությունը։ Անհամեմատ լավ կլիներ, եթե վարպետ Մարգարի ձայնը հնչեր քար լռության մեջ։ Կամ՝ երբ բժշկուհի Գայանեն խորհուրդ է տալիս Բալյանին հեռանալ, որովհետև բոլորն ատում են նրան։ Երբ Բալյանը զառանցում է, և Գայանեն վերցնում է գետնին ընկած պարտտոմսի դատարկ կազմը, օգնության է հասնում փրկարար երաժշտությունը. ահա այս «սկզբունքով»



դիտողն արդեն գիտե, թե որտեղ պետք է հնչի իլյուստրատիվ երաժշտությունը։ Այս ֆիլմում երաժշտությունը շատ տեղերում անհարկի է և ոչինչ չասող։ Այստեղ կատարվում է նաև էստրադային մի երգ, որը երգում է Արան՝ մոր հետ հանդիպելու պահին։ Այս երգը այլ հանգամանքներում կարող էր հուզել, հաճելի թվալ, իսկ այստեղ այն չպատճառաբանված է, ոչ տեղին և ոչ մի ազդեցություն չի գործում։

Կոմպոզիտոր Կ. Օրբելյանը երկու երգ է գրել նաև «Փառքի օղակներ» կինոֆիլմի (ռեժ. Յու. Երզնկյան) համար։ Այդ երգերը նույնպես տեղին չէին։ Հատկապես ձգձգված էր վերջին երգը՝ Ժակ Դուվալյանի կատարմամբ։

Ահա և «Փլուզում» կինոնկարը (ռեժ. Սարկիսով, կոմպ. Միրզոյան)։ Զգիտես ինչու երկրորդական կերպար Կարինեի լեյտմոտիվն ավելի պայծառ և գեղեցիկ է, քան գլխավոր գործող անձինը՝ Վարդանինը։ Իհարկե, այս թերությունը գալիս է նաև սցենարից, որտեղ մինչև վերջ անհասկանալի է մնում, թե Վարդանն ո՞վ է և ինչ է ուզում։ Իսկ թե Կարինեի լեյտմոտիվն ինչու է հանկարծ բարձրախոսով հնչում և այն էլ որպես վոկալիզ, չի պարզվում։ Կարինեի լեյտթեման հնչում է նաև ուրիշ կերպարների՝ Սեդայի և Վարդանի հանդիպումների ժամանակ։ Անբնականության և խրոնիկալ-դոկումենտալ ֆիլմի տպավորություն է թողնում պրոֆեսիոնալ երգչախմբի և նվագախմբի կատարմամբ աշխատանքային-հերոսական երգը, երբ թունելագործները վերջապես միանում են հակառակ կողմերից։ Այս ֆիլմում նույնպես մեծ է «կադր հարստացնող» երաժշտության դոզան։

Ի դեպ, խրոնիկալ-դոկումենտալ ֆիլմի երաժշտական ձևավորման տպավորություն է թողնում նաև «Ինչի մասին է աղմկում գետը» կինոֆիլմի (ռեժ. Մելիք-Ավագյան, կոմպոզիտոր Ա. Այվազյան) մի երկու էպիզոդների ժամանակ հնչող երաժշտությունը։ Օրինակ՝ երբ Սեդան տեսնում է եֆրեյտոր Արմեն Մանուկյանին, լսվում է ֆոնային երաժշտություն՝ կանանց երգչախմբի կատարմամբ։ Ամբողջ ֆիլմի համար հաջող է գտնված «Ծիծեռնակ» ժողովրդական երգի թեման։ Չնայած դրան, այս թեման (որը շեշտում է օտարության մեջ գտնվող հայի ճակատագիրը) նույնպես ձանձրալի է դառնում, որովհետև դառնալով ֆիլմի լեյտմոտիվը և մի քանի անգամ տարբեր վարիացիաներով կրկնվելուց հետո դիտողին հարկադրում է ապակենտրոնանալ կատարվող գործողությունից և ուշադիր լսել միայն երաժշտությունը։ Մեր կինոնկարներում այս կարգի թերությունները շատ են։ Մեր կարծիքով «Հայֆիլմ» կինոստուդիայի ստեղծագործական կոլեկտիվը կարող է և պետք է վերացնի դրանք։



Ինչպես կինոֆիլմի տարբեր տեսակներում, այնպես էլ հեռուստատեսային հաղորդումներում կարևոր տեղ է գրավում երաժշտությունը, այն օգտագործվում է հեռուստատեսային ֆիլմերում, ակնարկներում, թեմատիկ և այլ հաղորդումներում։ Եթե մի կողմ թողնենք հեռուստատեսության տեխնիկական առավելություններն ու թերությունները կինոյի համեմատությամբ և ընդունենք, որ հեռուստատեսությունը որպես արվեստ նույն կինոն է, միայն ավելի փոքր էկրանով («փոքրէկրան կինո»), նույն սխալները հանդիպում են նաև այստեղ, միայն այն տարբերությամբ, որ հեռուստատեսության մեջ երաժշտական ձևա-

վորումը կատարվում է վաղուց արդեն գրված ու պատրաստի երաժշտության հիման վրա։

Հենց այդ վաղուց արդեն գրված ու հանրահայտ երաժշտության պատճառով է, որ մենք հեռուստացույցից համարյա ամեն օր լսում ենք նույն տաղտկալի «ձևավորումները»։

Երաժշտական ձևավորումը պետք է կատարել ստեղծագործաբար և կարողանալ նույն սյուժեի կամ կինոկադրերի համար գտնել ու տեղին օգտագործել երաժշտական հատվածների մի քանի տարբերակներ։ Քիչ են օգտագործվում նաև այնքան կարևոր և, հատկապես, հեռուստատեսության համար ձայնագրված աղմուկները (ծափեր, գործարանային աղմուկներ և այլն)։ Որոշ շատախոսականության և շաամպի կնիք է կրում նաև ստուդիայի բեմադրած գեղարվեստական հաղորդումների երաժշտական ձևավորումը։ Օրինակ, տեսարանների «անցման» ժամանակ կամ դերասանի դեմքը խոշոր պլանով ցուցադրելիս անմիջապես օգնության է գալիս երաժշտությունը։ Այստեղ խոսքը, իհարկե, անտեղի և անիմաստ երաժշտական ձևավորման մասին է։

Մենք այն կարծիքին ենք, որ կինեմատոգրաֆիայի ներքին ռեսուրսներն ու հնարավորություններն օգտագործելու դեպքում կարելի է խուսափել երաժշտության ճակատայնությունից։ Դերասանի վարպետ խաղն ու խոսքը, բնական աղմուկը, ոչ տեղին «լռությունը» հաճախ ավելի արտահայտիչ են, քան երաժշտությունը։

Սրանց միջոցով է այսօրվա կինեմատոգրաֆիան և հեռուստատեսությունը խուսափում երաժշտության անտեղի և ճակատային օգտագործումից։ Խոսելով «Հայֆիլմ» կինոստուդիայի և հեռուստատեսության ստուդիայի աշխատանքներում եղած թերությունների մասին, մենք բոլորովին չենք ցանկանում ժխտել արվեստի այդ երկու օջախներում անցյալում և այժմ եղած դրական ու գովելի աշխատանքը։

Լավը նրանց մոտ եղել է և կա։ Բայց լավը ծնվում և մեծանում է միայն քննադատության և ինքնաքննադատության առկայության դեպքում։

**Մ. ՊԵՏՐՈՍՅԱՆ**

Հեռուստատեսության ստուդիայի
ճնշյունային ռեժիսյոր



**ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ**

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ս., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԿԻՐԱԿՈՍՅԱՆ Ա. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐԳՍՅԱՆ Վ. Հ.

Թողարկիչ՝ Ա. ՅԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ն. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿԿ Կենտկոմի շենք, հեռ. 2—56—92

Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел. 2—56—92

ՎՖ 05208 Պատվեր 429 Տիրաժ 9700 Գինը 25 կոպ.։

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 15/II 63 թ.։

Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան։

## ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### 8-ԻՑ 10 ԱՆԳԱՄ

«Ուֆիմկաբել» գործարանում շահագործման է հանձնվել փաթաթման կիսաավտոմատ հաստոց։ Այդ հաստոցի արտադրողականությունը 8-ից 10 անգամ բարձր է համանման նպատակների համար կիրառվող ինչպես հայրենական, այնպես էլ արտասահմանյան մեքենաներից։

### ՆՈՐ ԱԳՐՈՏԵԽՆԻԿԱ

Հայտնի է, որ արդյունաբերական թափոնով աղտոտված հողերում բույսերը չեն աճում։ Անհրաժեշտ էր լինում 50 տարով ընդհատել հողերի աղտոտումը։

Գիտությունների ակադեմիայի գլխավոր բուսաբանական այգու աշխատակից Սիգալովը այդ հողերը վերականգնելու համար առաջարկել է հետևյալ տեխնոլոգիան. աղտոտված հողերը ծածկում են հողի մի սանտիմետրանոց կամ տորֆի երկու սանտիմետրանոց շերտով, որից հետո ջրում և թավլուկով ամրացնում են։ Դրանից հետո ցանված սերմերը արմատակալում են և աստիճանաբար աճում։ Լավ կլինի ցանելուց առաջ հողը պարարտացնել։ Առաջին իսկ տարին աղտոտված հողերը ծածկվում են հողի հաստ շերտով, իսկ երրորդ տարում այդպիսի հողերից կարելի է ստանալ լավ բերք։

### ԲՈՒԼՂԱՐԱԿԱՆ ԱՌԱՋԻՆ ՀԱՇՎԻՉ ՄԵՔԵՆԱՆ

Մի խումբ ինժեներներ նախագծել են բուլղարական առաջին էլեկտրոնային հաշվիչ մեքենան՝ դիֆերենցիալ հավասարումներ լուծելու համար։ Տասից տասնհինգ րոպեի ընթացքում մեքենան մի քանի հավասարում է լուծում։ Նույնիսկ բարձր որակավորման մաթեմատիկոսի համար այդ նույն աշխատանքը կպահանջեր մի տարուց ոչ պակաս ժամանակ։

### ԻՆՔՆԱՀՈՍ ՄԱՆՐԱԴԻՏԱԿ

Լենինյան օպտիկական գործարանում նախագծվել է մանրադիտակ՝ ինքնահոս գրչի մեջ։ Այն կշռում է 20 գրամ, ոսպնյակի (լինզա) սիստեմը մեծացնում է 16 և 32 անգամ։ Մանրադիտակը նախատեսված է՝ մշակվող մակերեսների կառուցվածքի, համաձուլվածքների մակերեսների հետազոտության և բիոլոգիական փորձեր անցկացնելու համար, օրինակ, այգեգործության և մեղվաբուծության մեջ։

### ՍՏՈՐԳԵՏՅԱ ԱՂԲՅՈՒՐՆԵՐՈՎ ԱՄԵՆԱՀԱՐՈՒՍՏ ԵՐԿԻՐԸ ԱՇԽԱՐՀՈՒՄ

Հունգարիայում ներկայումս գործում է 35000 արտեզյան ջրհոր։ Դրանք բոլորը միասին րոպեում տալիս են մեկ միլիոն լիտր ջուր։ Այդ ջրի մեկ հինգերորդական մասի ջերմությունը C-ի 26°-ից բարձր է։ Դրա շնորհիվ մակերևույթի վրա դուրս է գալիս տարեկան այնքան ջերմություն, որը հնարավոր կլինի ստանալ 1,8 տոննա լավորակ ածուխ վառելու դեպքում։

Հունգարական Բյուկ գյուղում գտնվում է միջին Եվրոպայի ամենահորդառատ ջրհորը։ 1280 մետր խորությունից մի րոպեում դուրս է ցայտում 13500 լիտր 60°-ի տաք ջուր, խփող շիթի բարձրությունը հասնում է 60 մետրի։

Մասնագետների հաշվումներով Հունգարիայում 1000—3000 մետր խորության վրա այնքան տաք ջրի պաշարներ կան, որ իր էներգիայի պարունակությամբ հավասար է հարյուրավոր միլիարդ տոննա քարածխի։

### ԾԱԾԿԱԾ ՆԱՎԱՀԱՆԳԻՍՏ

Շվեդական Գետեբորգ քաղաքում մշակվել է ծովային ծածկած նավահանգստի շինարարության նախագիծը։ Այդպիսի նավահանգստում բեռնման-բեռնաթափման աշխատանքները կարելի է կատարել անկախ եղանակից։

ԳԻՆԸ 25 Կ.

ИНДЕКС 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԵԳԻՊՏԱՑՈՐԵՆԸ ԳԵՐԱԴԱՍՈՒՄ Է ՀԱՐԱՎՍԼԱՎԱԿԱՆ ԿԼԻՄԱՆ

*Հարավսլավական Նովի-սաթ քաղաքի գյուղատնտեսության գիտա-հետազոտական ինստիտուտի մասնագետները հաղորդել են, որ երբ ցանում են Իտալիայից ստացված հիբրիդային եգիպտացորենը, այն հասունանում է հուլիսի կեսերին։ Դա հնարավորություն է տալիս Հարավսլավիայի պայմաններում տարեկան ստանալ երկու բերք։ Այդ հիբրիդի մի սորտը հասունանում է 86—95, իսկ մյուսը՝ 96—105 օրվա ընթացքում։*

## 10 ՀԱԶԱՐ ՄԵՏՐ ԴԵՊԻ ԵՐԿՐԻ ԽՈՐՔԸ

*Դեռ ոչ վաղուց այդպիսի խնդիրը համարվում էր համարյա ֆանտաստիկ, չէ որ ՍՍՌՄ-ում ամենախոր հանքը 5000 մետրից մի փոքր էր անցնում, իսկ այժմ Ուրալմաշ գործարանի կոնստրուկտորները ինժեներ Գ. Վ. Ալեքսենսկու ղեկավարությամբ ստեղծել են «Ուրալմաշ—300 ДЭ» փորիչ սարքավորման նախագիծը։ Նոր սարքավորումը հնարավորություն կտա մինչև 10000 մետր երկրի խորքը գնալու։*

*Հազվագյուտ դիզելա-էլեկտրական ագրեգատի ընդհանուր հզորությունը կայուն հոսանքի վրա 6000 ձիաուժ է։*

*Նոր սարքավորումը նախատեսված է նավթի և գազի հորերի գերխոր փորման համար։ Սարքավորման գծագրերը հանձնըված են արտադրությանը։*

## ԼԵՀԱԿԱՆ ՊԼԱՍՏՄԱՍՍԱՆԵՐ

*Լեհաստանի պլաստմասսաների ինստիտուտում ստացվել են պլաստմասսայի նոր տեսակներ։ Դրանցից մեկը կոչվում է «բիստան»։ Լեհական մասնագետները հայտարարել են, որ երկու տարի հետո կարտադրվեն բիստանի մեխեր, բիստանի հրակայուն ժապավեն և այլն։ Բիստանը աչքի է ընկնում բարձր դիմացկունությամբ, հեշտ է մշակվում, դիմանում է մինչև C 200° ջերմության։*

*Ստացված է նաև «ֆորմոն», որը նույնպես բարձր դիմացկունություն ունի, կայուն է օրգանական թթուների նկատմամբ և հեշտությամբ ներկվում է։ Ստացվել է պլաստմասսա, որը կարելի է պողպատե դետալները խրոմապատելու կամ նիկելապատելու փոխարեն ծածկել դրանով։*

## ԱՌՈՂՋՈՒԹՅԱՆ ԷԼԻՔՍԻՐ ԵԳԻՊՏԱՑՈՐԵՆԻՑ

*«Դաշտերի թագուհու» կախարդական հատկությունները հայտնի են շատ վաղուց։*

*Բայց մինչև այժմ չէին կարողանում եգիպտացորենի ածիկ պատրաստել։ Վերջերս Կիևի սիրոպի գործարանի մասնագետները Գարեջրի և անալկահոլ խմիչքների արդյունաբերության Մոսկվայի գիտահետազոտական ինստիտուտի հետ միասին առաջին անգամ աշխարհում գրտան եգիպտացորենից այդ դիետիկ մըթերքն ստանալու միջոցը։ Իր «եղբայրակիցների» մեջ եգիպտացորենի ածիկը ամենաէժանն է։ Նրա տոննան 76 ռուբլով էժան է նստում գարու ածիկից։*